the Turkish authorities to return his possessions, but he was arrested immediately with false statement, charged with espionage, and was expelled”[36].

In the first days of the military occupation the Turkish command ordered the people living in the town to hand over their weapons and threatened to shoot them in case of disobedience. Foreseeing the real purpose of that order, the Alexandrapolians, through the town council, immediately handed over the bulk of the weapons. As a result of subsequent searches, no weapons were found among the inhabitants, so the Turkish gendarmes continued their favorite occupation – looting. In villages, the searches were generally turned into irregular looting[37].

With the support of the same gendarmerie, after the Ottoman army entered Alexandrapol, the tatars opened the abandoned houses and shops seizing the possessions of the people who had left them[38].

Often, as a result of police machinations, whole villages were deprived of their settlements. For example, Adiyaman was inhabited by Muslim immigrants from the province of Yerevan. In response to requests for return of the village to their legitimate owners, the gendarmerie chief stated that “the adiamants were deceitful, and the Turkish government had always had a fair attitude toward the Armenian subjects”[39].

In another case, when a Turkish soldier was found dead on the road to Horom, the police sent a mounted group with cannon to Horom to punish the villagers even without initiating any investigation[40].

During the six months of its existence, the police tried to hide the traces of Turkish atrocities. The population of the uyezd was forced to write letters of gratitude and give false testimony, the priests were forced to present victims of mass killings as victims of natural disasters, and those who died of torture as pediculosis drowned. In parallel, police collected documents that would show

[36] **Ատրպետ,** Ճաղի փաշա, Մշակ, 1918, 31 դեկտեմբերի, NAA, f. 200, l. 1, w. 126, n. 41–42.

[37] **Յովսէփեան Մ.,** Ալեքսանդրապոլը՝ գրաւումէն ետք (ականատեսի պատմութիւնը), Աշխատանք, 1918, 8 յունիսի:

[38] **Ատրպետ,** Ալէքսանդրօպօլ քաղաքի 200 օրվայ գրաւումը Օսմանեան զօրքերից, Մշակ, 1918, 26 դեկտեմբերի:

[39] NAA, f. 221, l. 1, w. 89, n. 61.

[40] NAA, f. 200, l. 1, w. 126, n. 70.

the world the “atrocities of the Armenians against the poor Muslims” and would justify the retaliatory rigors of the Turkish government[41].

Summing up the brief review of the administrative legal policy of the Ottoman Empire in the uyezd of Alexandrapol in May-November 1918 we should note that Turks didn’t constitute the Ottoman system of governance in the occupied territories. Instead of it in order to give legal character to their “illegalities” the activities of the municipal autonomy was restored right after the occupation of the town. In the same way, instead of re-launching the justice system, the Turkish command created a police structure called upon not to maintain order but to conceal the traces of their own crimes.

## ՕՍՄԱՆՅԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԱՐՉԱ-ԻՐԱՎԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱԼԵՔՍԱՆԴՐԱՊՈԼԻ ԳԱՎԱՌՈՒՄ 1918 Թ. ՄԱՅԻՍ-ՆՈՅԵՄԲԵՐ ԱՄԻՍՆԵՐԻՆ

ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ Ա.

**Ամփոփում**

1918 թ. գարնանն աշխարհամարտի Կովկասյան ճակատում ռազմա-քաղաքական իրավիճակը կտրուկ փոխվեց ի վնաս հայ ժողովրդի: Բրեստ-Լիտովսկի պայմանագրով Խորհրդային Ռուսաստանի պատերազմից դուրս գալուց հետո Անդրկովկասյան սեյմը փորձեց Օսմանյան կայսրության հետ փոխհամաձայնության եզրեր գտնել, սակայն հաջողության չհասավ: Ապրիլի 1-ին վերսկսված թուրք-անդրկովկասյան պատերազմը վերածվեց թուրքական զորքերի հաղթարշավի: Մայիսի 14-ի գիշերը թուրքական հրամանատարությունը վերջնագրով պահանջեց իրեն հանձնել Ալեքսանդրապոլը, ապա չսպասելով պատասխանի՝ կարճատև ռմբակոծումից հետո տիրեց քաղաքին ու համանուն գավառի մեծագույն մասին: Քաղաքը լքեցին բնակչության մեծ մասը, քաղաքային իշխանություններն ու ոչ պաշտոնական կազմակերպությունների ղեկավարները, ոստիկանությունը իր ողջ կազմով:

[41] NAA, f. 221, l. 1, w. 89, n. 60–61.

Ալեքսանդրապոլը գրավելուց հետո թուրքերը զուտ անվանապես վերականգնեցին քաղաքային ինքնավարության գործունեությունը:

Նրանք ստեղծեցին ոստիկանական մի մարմին, որը վեց ամիս շարունակ զբաղվեց ռազմակալված շրջանը թալանելով և թուրքական վայրագությունների հետքերը թաքցնելով:

## АДМИНИСТРАТИВНО-ПРАВОВАЯ ПОЛИТИКА ОСМАНСКИХ ВЛАСТЕЙ В АЛЕКСАНДРОПОЛЬСКОМ УЕЗДЕ В МАЕ-НОЯБРЕ 1918 ГОДА

АЙРАПЕТЯН А.

**Резюме**

Изменившаяся весной 1918 года обстановка на Кавказском фронте стала для армян угрожающей. После подписания Брестского мира Советская Россия вышла из войны. Закавказский сейм стал предпринимать попытки сближения с Османской империй, однако это не увенчалось успехом. Возобновившиеся с первого апреля военные действия турок в Закавказье завершились победой турецких войск. В ночь на 14 мая турецкое командование потребовало сдать Александрополь и, не дожидаясь ответа, захватило город и большую часть уезда. Большинство жителей вместе с членами правления городского совета, руководителями общественных и беженских организаций и личным составом полиции покинули город.

Захватив Александрополь, турки восстановили деятельность городского самоуправления, сосредоточившего в своих руках общественно-государственные структуры уезда и одновременно выступавшего в качестве посреднического звена между населением и турецким командованием. Система правосудия в уезде отсутствовала. На пятый день после взятия города был учрежден полицейский орган, который буквально грабил население, уничтожая повсюду следы жестокости турок.

# ԱՇՈՑՔ ԳԱՎԱՌԸ 1728 Թ. ՕՍՄԱՆՅԱՆ ՀԱՐԿԱՑՈՒՑԱԿՈՒՄ

ՄԻՐԶԱԲԵԿՅԱՆ Գ.
georgimirzabekyan@yahoo.com

Հարկամատյանը կարևոր սկզբնաղբյուր է տարածաշրջանի ժողովրդագրության և սոցիալ-տնտեսական հարաբերությունների բացահայտման համար: Դեռևս 1970-ական թվականներից վրացի հեղինակավոր հետազոտողների՝ Ս. Ջիքիայի և Ն. Շենգելիայի կողմից մեծ ծավալի աշխատանք է տարվել վերծանելու և թարգմանելու 1728 թ. օսմանյան իշխանությունների կազմած Թիֆլիսի վիլայեթի հանգամանալից աշխարհագիր-ցուցակները[1]: Այդ երկհատոր աշխատությունը հրատարակվել է Թիֆլիսում, որն ընդգրկում է նաև Արևելյան Հայաստանի մի շարք երկրամասեր, որոնց թվում է Աշոցքի (օսմաներեն բնագրում՝ Քայըոլի) աշխարհագիրը: Հարկ է փաստել, որ վրացերեն թարգմանությանը հաջորդում է օսմաներեն բնագիր տեքստի պատճենը[2]: Օսմաներեն բնագրի հետ համեմատության շնորհիվ կարողանում ենք հավաստիանալ հարկացուցակի վերծանության ճշգրտության մեջ և երբեմն կատարել համապատասխան սրբագրումներ:

Աշոցք գավառի հարկացուցակը, որը զետեղված է գրքի առաջին հատորում[3], աղբյուրագիտական մեծ արժեք ունի, քանզի այն հնարավորություն է տալիս ուսումնասիրելու 1728 թ. նշյալ գավառի բնակեցվածությունը, բնակավայրերի քանակը, ազգաբնակչության էթնիկական կազմը, դիտարկելու գյուղերի անունները, պատկերացում կազմել պահանջվող հարկերի վերաբերյալ և այլն:

Աշոցքի օսմանյան աշխարհագիրն ունեցել է հետևյալ հերթականությունը. հարկամատյանում նախ նշվում է գյուղի անունը, որից հետո շարադր-

---

[1] 1728 წლის თბილისის ვილაიეთის დიდი დავთარი. ოსმალური ტექსტი ქართული თარგმანით, შესავლით, გამოკვლევითა და ფაქსიმილეებით გამოსაცემად მოამზადეს სერგი ჯიქიამ და ნოდარ შენგელიამ. თბილისი: ჰოროხი, 2009–2010.

[2] Նույն տեղում, հ. 1, էջ 564–829, հ. 2, էջ 464–724:

[3] Նույն տեղում, հ. 1, էջ 810–829:

վում են գյուղացիների անուն-հայրանունները, այնուհետև՝ հարկատեսակները՝ իրենց փողային արժեքներով, նշելով նաև ընդհանուր գումարը, որից հետո նկարագրվում են այդ գյուղի աշխարհագրական սահմանները:

Ըստ օսմանյան աշխարհագրի, Աշոցք գավառը, որն այդ ժամանակահատվածում պատկանել է Թիֆլիսի լիվային, բաղկացած է եղել 51 բնակավայրերից, որոնցից 16-ը՝ չբնակեցված: Բնակչության թվով ամենամեծ գյուղերը Ղազանչի (օսմաներեն բնագրում՝ Քազանչի) և Քոչա բնակավայրերն են եղել, որոնք ունեցել են համապատասխանաբար 190 և 146 հարկատու: Մյուս գյուղերի հարկատուների թիվը անհամեմատ քիչ է գրանցված՝ տատանվելով 7-ից 85-ի միջև: Այստեղից կարող ենք եզրակացնել, որ Աշոցք գավառի գյուղացիները մեծ թիվ չեն կազմել: Ինչ վերաբերում է գյուղերի դատարկվելուն, ապա դրա պատճառների մասին ստույգ հետևություն անելը գրեթե անհնար է, քանի որ մեր ձեռքի տակ չունենք որևէ վկայություն:

Հարկ է ընդգծել, որ հարկացուցակում գյուղերը ներկայացվել են նաև ըստ մահալների: Օրինակ՝ վերոհիշյալ Ղազանչի գյուղը բաժանված է եղել երկու՝ Քահանայի (Քեշիշի) և Սարգսի մահալի միջև: Այդ համատեքստում, ուշագրավ է նաև մեկ այլ իրողություն. գյուղում եկեղեցու առկայության դեպքում, բնակչությունը ներկայացվել է անջատ, սակայն, ընդհանուր հարկաչափի գրանցումը կատարվել է միասնական ձևով: Աշոցք գավառում այդպիսին էր Օրթալու գյուղը:

Գյուղերում ապրող մարդկանց անուններից դատելով՝ նրանց ճնշող մեծամասնությունը հայեր են: Մահմեդականները հայ բնակչության հետ խառը բնակվել են միայն Քասաբ (6 մահմեդական, 10 քրիստոնյա), Թերզի Օղլու (5 մահմեդական, 30 քրիստոնյա), Սելիմ (1 մահմեդական, 27 քրիստոնյա) և Ջիգրաշեն (1 մահմեդական, 33 քրիստոնյա) գյուղերում:

Անշուշտ, հանդիպում ենք նաև այնպիսի դեպքերի, երբ անուն-հայրանուններից մեկի բաղադրիչը տեղ-տեղ կարող է օտարածին լինել (օրինակ՝ Դուլի, Ալահվերդի, Միրի), սակայն նման դեպքերում, հաշվի առնելով ընտանիքի անդամներից մեկի՝ հոր կամ եղբոր հայկական ծագման անունները, վերականգնվում է հարկատուների ազգային պատկանելությունը:

Անձնանունների համատեքստում հետաքրքրական է վրացերեն տարբերակի համեմատությունը: Այստեղ նկատում ենք, որ որոշ հայկական անձնանուններ վրացի հետազոտողների կողմից ընթերցվել են ոչ ճիշտ, որը, ամենայն հավանականությամբ, պայմանավորված է անձնանունների

համակարգին ոչ բավարար չափով տիրապետելու գործոնով: Բացի այդ, կան մի շարք օրինակներ, երբ հեղինակները թերացել են հետևել անունների՝ օսմաներենի փոխարկման օրինաչափությանը և տվյալ անունը մեկ այլ տեղ արձանագրել են այլ կերպ:

Մեր ուշադրությունը սևեռել ենք նաև գյուղերի անուններին: Բանն այն է, որ հաճախ հանդիպում ենք ոչ հայկական ծագման բնակավայրերի անվանումների, ինչը առաջին հայացքից կարող է խաբկանք առաջացնել, ըստ որի, գյուղերի բնակիչները հայեր չեն, կամ առնվազն ընդհանուր թվի չնչին տոկոսն են կազմում: Սակայն, ինչպես նշվեց, հարկամատյանում տեղ գտած անձնանունները, ճնշող մեծամասնությամբ, հայկական են, ուստի գյուղերի ոչ հայկական անվանումները չեն կարող հայերի գոյությունը կասկածի տակ դնել: Այդուհանդերձ, արձանագրված են նաև դեպքեր, երբ մի շարք գյուղեր կրել են տվյալ գյուղում ապրող գյուղապետի անունը[4], ով ենթադրաբար, պատասխանատու էր գյուղի անցուդարձի համար: Մենք հակված ենք կարծելու, որ այդ գյուղերի անվանումները պայմանավորող օրինաչափություններից էր:

Հաջորդ ուշագրավ հատվածը վերաբերում է Աշոցք գավառից գանձվող հարկերին: Նյութի քննությունը ցույց է տալիս, որ գյուղերից պահանջվել են ընդհանուր թվով 18 անուն հարկեր, որոնց մեծամասնությունը հանդիպում է գավառի ամեն մի գյուղի ցուցակի վերջում, իսկ մնացածները, պայմանավորված տվյալ բնակավայրի հնարավորություններով, պայմանական են: Ամեն մի գյուղում սահմանված էին իսփենջի[5], ցորենի, գարու, կալված ցորենի, ձմեռանոցի ծախսերի, ոչխարների, խոզերի, խոտի, յուղի, փեթակի, հարսնության, դաշտապահության և հողի թափուի[6], ինչպես նաև՝ հանցանքի և ոճրի, բացակայող և կորած ապրանքների, ընդհանուրի և խասսի[7]

---

[4] Որպես օրինակ՝ կարելի է նշել Փանոս, Մարզպաե և այլ գյուղերը, որոնց ցուցակի առաջին տողով արձանագրված անձինք ունեցել են տվյալ անունները:

[5] Օսմանյան կայսրությունում հարկի տեսակ էր, որը գանձվել է քրիստոնյա հպատակներից:

[6] Հողային տուրք, որը գյուղացին հողաբաժին ստանալիս վճարում էր ֆեոդալին (կամ պետությանը): Այդ հարկը վճարվում էր այն դեպքում, երբ հողաբաժին ստացող գյուղացին տվյալ հողաբաժնի նախկին զբաղեցնողի անմիջական ժառանգորդը չէր:

[7] Խոսքը մասնավոր սեփականության մասին է:

բեյթ-ուլ մալի[8] հարկատեսակները, իսկ ոչ մշտապես հանդիպողներից են՝ բեննաքի հարկը[9] և ջրաղացների, ձիթհանի, շուկայում օրավարձով աշխատելու, նախնական գնահատմամբ քիլեի[10] և ոչխարի փարայի հարկերի արժեքի դիմաց գանձվող միջոցները:

Ուշադիր զննելով հարկատեսակներն իրենց փողային միավորով՝ նկատում ենք, որ 1728 թ. օսմանյան իշխանությունները գյուղերում որոշ հարկադրույքների դիմաց հստակ սահմանել էին նրանց գինը: Այսպես օրինակ՝ բեննաք համարվող յուրաքանչյուր գյուղացի ստիպված էր վճարել 60 աքչե[11], իսփենջի դիմաց՝ հարկատուից գանձվում էր 120 աքչե, ցորենի և գարու ամեն քիլեի համար՝ համապատասխանաբար 20 և 15 աքչե: 15 աքչե էր սահմանված նաև կալված ցորենի մեկ քիլեն, իսկ հարսնության հարկը 120 կամ 180 աքչե էր: Ինչ վերաբերում է մյուս հարկատեսակներին, ապա դրանց արժեքը տատանվում էր:

1728 թ. Վաղարշապատում անցկացված օսմանյան աշխարհագրի տվյալների համաձայն[12]՝ ցորենի, գարու համար նախատեսված հարկերը գերազանցում էին քննության առարկա շրջանի հարկաչափը: Վաղարշապատում ցորենի ու գարու մեկ քիլեի արժեքը կազմում էր համապատասխանաբար 30 և 20 աքչե:

Այսպիսով, մեր ձեռքի տակ եղած նյութերը պատկերացում են տալիս 1728 թ. Աշոցք գավառի ժողովրդագրական տվյալների մասին: Այն հնարավորություն է ընձեռում վերլուծությունների շնորհիվ վերհանել գավառի սոցիալ-տնտեսական պատկերը՝ բնակեցվածությունը ըստ գյուղերի, մասնա-

[8] Բառացի նշանակում է գանձատուն, ավելի լայն իմաստով՝ անժառանգ հանգուցյալների կալվածքներն ու ինչքերը կառավարող և պահպանող վարչություն, գանձարան:

[9] Հողագործ մահմեդականի վճարած հարկերից մեկն է. կար երկու տեսակի բեննաք՝ էքինլու և ջաբա: Էքինլու բեննաք էին կոչվում այն գյուղացիները, որոնք ունեին կես չիֆթ (1 չիֆթ = 7–15 հա) կամ դրանից էլ պակաս հողակտոր, իսկ ջաբա բեննաքը հող չուներ:

[10] Ընդեղենի (ցորեն, գարի և այլն) չափման միավոր, որը տարբեր է եղել ըստ ժամանակաշրջանների:

[11] Արծաթե դրամի միավոր: Օսմաներեն նշանակում է սպիտակավուն: Օսմանյան աքչեները հավասար էին մեկ քառորդ դիրհեմ արծաթի, իսկ դիրհեմը հավասար էր 3.06 գրամի:

[12] **Միրզաբեկյան Գ.,** Վաղարշապատի 1728 թ. օսմանյան հարկացուցակը, Բանբեր Մատենադարանի, N 23, Ե., 2016, էջ 170–193:

ցույց անել օսմանյան աշխարհագրի անցկացմանն առնչվող ևս մի շարք կարևոր այլ օրինաչափություններ և վերջապես, տեղեկանալ գյուղերից գանձվող հարկաչափերին:

## THE ASHOTSK PROVINCE IN THE 1728 OTTOMAN TAX REGISTER

MIRZABEKYAN G.

**Summary**

The tax register of Ashotsk province (in the Ottoman language-Qaykulu) is a meaningful source from the point of view of demography and socio-economic issues. The tax register of the province gives a large opportunity to research the ethnic composition, name of villages, their quantity, taxes, etc. The tax register of Ashotsk contains a list of 51 villages including 16 abandoned ones. The overwhelming majority in the villages were Armenians. Muslims lived only in 4 villages together with Armenians and they found themselves in the minority. The population of Ashotsk villages paid 18 different taxes to the Ottoman authorities mostly collected from every settlement. It should be mentioned that one kile of wheat and barley was taxed less than in the tax register of Vagharshapat of the same year.

## ПРОВИНЦИЯ АШОЦК В ОСМАНСКОМ НАЛОГОВОМ РЕЕСТРЕ 1728 Г.

МИРЗАБЕКЯН Г.

**Резюме**

Налоговый реестр провинции Ашоцк (на османском-Кайкули) являет собой важный источник по исследованию демографической и социально-политической картины региона. Проведенная в провинции Ашоцк пере-

пись населения предоставляет нам данные о ее этническом составе, топонимике, количестве сел, взимаемых налогах и т.д. В 1728 г. в Ашоцке насчитывалось 51 село, из которых 16 не были заселены. Население подавляющего большинства сел состояло из армян. Мусульмане жили с армянами лишь в четырех селах и составляли меньшинство. Жители сел Ашоцка платили османским властям 18 различных видов налогов, большая часть которых взыскивалась с каждого села. Следует отметить, что мера (киле) пшеницы и ячменя, взимаемая с жителей сел Ашоцкой провинции, была меньше меры, зафиксированной в османском реестре Вагаршапата 1728 г.

# ՀԱՅԵՐԻ ՆԵՐԴՐՈՒՄԸ 19–20-ՐԴ ԴԱՐԵՐԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՊԵՏԱԿԱՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ԱՂԻՉՅԱՆ Խ.
xachrgxa@gmail.com

Աշխարհասփյուռ հայկական համայնքը պատմության մեջ հիրավի կարելի է համարել սփյուռքների մեջ ամենամեծերից և ամենաազդեցիկներից մեկը: Հայկական համայնքը միշտ տարբերվել է իր կրոնի և լեզվի նկատմամբ ընդգծված հավատարմությամբ և իր նվիրվածության ու կրթական բարձր մակարդակի շնորհիվ մշտապես կարողացել է էական տեղ զբաղեցնել այլ երկրների հասարակական ու քաղաքական կյանքում՝ հավատարիմ մնալով իր ազգային հիմքերին և ծառայեցնելով իր դիրքն ու ազդեցությունը նաև հայրենիքի ու հայերի շահերին:

Այս պատմական իրողության դրսևորումներից մեկն է նաև հայերի գործունեությունը Եգիպտոսում: Բազմաթիվ պատմական աղբյուրներում կարելի է փաստերի հանդիպել այն մասին, որ Եգիպտոսը, չնայած կրոնական տարբերություններին, մինչև 20-րդ դարի կեսերը հայերի համար դարձել էր հիմնական գաղթային ուղղություններից մեկը: Չնայած իրենց թվաքանակի համեմատական սակավությանը՝ հայերը կարողացել են նշանակալի ազդեցություն թողնել Եգիպտոսի հասարակական և քաղաքական կյանքի մի շարք բնագավառներում:

Եգիպտոսում հայերի ներկայության մասին պատմագրության մեջ խոսվում է Հռոմեական և Բյուզանդական տիրապետությունից սկսած մինչև մեր օրերը: Եգիպտոսի հետ առնչվելով տնտեսական և միջազգային առևտրի բնագավառներում, հայերը Խառը դատարանների ստեղծման միջոցով նպաստել են Եգիպտոսի զարգացմանն ու արդիականացմանը, իսկ հայկական զորագունդը վճռական դեր է խաղացել Եգիպտոսի վաղ միջնադարյան պատմության մեջ: Հիմնվելով բազմադարյան հայկական կրթական և մշակութային ժառանգության վրա՝ նրանք կարողացել են իրենց ներդրումն ունենալ Եգիպտոսի կրթության բնագավառի կազմակերպման, ազգային կրթական հաստատությունների հիմնադրման մեջ,

ինչպես նաև իրենց հետքն են թողել շինարարական արվեստի, նկարչության, երաժշտության, լուսանկարչության բնագավառներում:

Ֆրանսիական ռազմարշավի ժամանակ (1798–1801 թթ.) ծագումով ալբանացի Մուհամմադ Ալին սուլթանից հրաման ստացավ ստանձնել Օսմանյան բանակի փոխ-հրամանատարությունը և դաշնակից անգլիական ուժերի հետ միասին ազատել Եգիպտոսը ֆրանսիական լծից: Մուհամմադ Ալին իր պաշտոնը ստանձնելուց առաջ փորձեց ապագայի ծրագրերը ամուր հիմքերի վրա դնել: Այդ պատճառով նա դիմեց պոլսեցի երևելի սեղանավոր (սառաֆ) Աբրահամ Քարաքեհիայիին, ով չմերժեց նյութական օժանդակության խնդրանքը: Տեղին է նշել, որ Օսմանյան կայսրության հարուստ սեղանավորները զբաղվում էին ֆինանսական գործերով, իսկ նրանց զգալի մասը, եթե ոչ մեծամասնությունը, հայեր էին[1]: Մուհամմադ Ալին, դառնալով Եգիպտոսի փոխարքա, Քարաքեհիային նշանակեց Կոստանդնուպոլսի ելևմտական ներկայացուցիչ և շնորհեց «Միսր Սառաֆի» տիտղոս, որը սերնդե-սերունդ պետք է մնար որպես ընտանեկան մենաշնորհ[2]:

Իր կառավարման սկզբնական շրջանում Մուհամմադ Ալին պետական եկամուտներ ապահովելու և տնտեսությանը զարկ տալու համար դիմեց մեծ թվով հայ ամիրա-սառաֆների, ովքեր պետական բյուջեից վարկավորված ձեռնարկությունների համար դրամական միջոցներ էին հայթայթում[3]:

Մեծ էր նաև հայ սառաֆների դերը Եգիպտոսի տնտեսական զարգացման մեջ: Այսպես, տարբեր ժամանակներում նրանց էին պատկանում Կահիրեի բաղնիքների, Մաթարիայի աղահանքերի և Դամմիեթի ձկան շուկայի շահագործման մենաշնորհը[4]: Հայ սառաֆների ազդեցությունը ավելի ուժեղացավ 1830-ական թթ., երբ 1828–1829 թթ. ռուս-թուրքական պատերազմի տարիներին քաղաքական հալածանքների հետևանքով ուժեղացավ Թուրքիայի հայ առևտրավարկային կապիտալի հոսքը դեպի Եգիպտոս: 1837 թ. հասնելով իրենց հզորության բարձրակետին՝ հայ սառաֆները Կահիրեում հիմնեցին Եգիպտոսի առաջին բանկը[5]:

---

[1] **Ալպօյաճեան Ա.,** Արաբական Միացեալ Հանրապետութեան Եգիպտոսի նահանգը եւ հայերը, Գահիրէ, 1960, էջ 182:

[2] **Չէյթլեան Ս.,** Հայութեան ներդրումը վաղ միջնադարեան և արդի Եգիպտոսի պատմութեան մէջ, 2004, էջ 67–68:

[3] **Թոփուզյան Հ.,** Եգիպտոսի հայկական գաղութի պատմություն (1805–1952), Ե., 1978, էջ 51–56:

[4] Նույն տեղում, էջ 57:

[5] Նույն տեղում, էջ 52:

Հաշվի առնելով հայերի մասնագիտական և անձնային հատկանիշները Մուհամմադ Ալին, անտեսելով կրոնական տարբերությունը, կարգադրում էր գործի նշանակել հայ պաշտոնյաների, քանի որ նրանք իրենց պաշտոնը ավելի ճշգրտությամբ, ավելի խղճով, ավելի նվիրված են կատարում և պետության գործերը մեծ քայլերով առաջ էին տանում[6]։

Պետության հիմնաքարերը տեղավորելու, զարգացման ուղեգծերը ճշտելու և երկրի արդիականացումը ապահովելու տեսակետից հայերը կարևոր դեր կատարեցին։ Նրանց մեջ կարևոր տեղ էր գրավում Պողոս բեյ Յուսուֆյանը (1768–1844 թթ.)[7], ով Եգիպտոս էր գաղթել Զմյուռնիայից։ Լավ հարաբերությունների մեջ գտնվելով Մուհամմադ Ալիի հետ և լինելով նրա գործընկերը առևտրի ասպարեզում՝ Պողոս Յուսուֆյանը լեզուների իր իմացության շնորհիվ դարձավ Եգիպտոսի փոխարքայի գլխավոր թարգմանիչը, առաջին կարգի խորհրդականը, պաշտոնական բանբերը, առևտրի և արտաքին գործերի նախարարը և տասնամյակներ շարունակ պահպանելով երկրի առաջավոր պետական գործչի նշանակությունը[8]։ Պողոս բեյը վերահաստատեց երկրում կարգ ու կանոն, հետո կազմեց Ելևմտական վարչությունը՝ պետության եկամտի նոր աղբյուրներ որոնելու համար։ Պետական հսկողության տակ անցան մաքսատները, ապա հողագործական հաստատությունները, ինչպես նաև կազմակերպվեցին ներքին ու արտաքին առևտրի ցանցերը[9]։

Սկզբնական շրջանում Պողոս բեյը ընդլայնեց Եգիպտոսի ծովային առևտուրը անգլիական ծովուժի օգնությամբ, որը Եգիպտոսի հացահատիկի կարիքն ուներ։ Հողագործական բարենորոգումների արդյունքում մշակելի հողերը 30%-ով ավելացան, եռապատկվեց տարեկան ընդհանուր բերքի քանակը, և գլխավոր բերքի՝ երկարաթել բամբակի մշակումը ընդլայնվեց։ 1837 թ. Ելևմտական վարչությունը Պողոս բեյի գլխավորությամբ վերակազմավորվեց և վերակոչվեց Առևտրի և Արտաքին գործերի նախարարություն։ Պողոս բեյի առևտրական քաղաքականությունը ամրապնդեց

---

6 **Աբրահամյան Ա.,** Համառոտ ուրվագիծ հայ գաղթավայրերի պատմության, հատոր Բ, Ե., 1967, էջ 56։

7 Մանրամասն տես՝ **Պարթեւեան Ս.,** Եգիպտահայ տարեցոյցը, Ա տարի, Գահիրէ, 1914, էջ 8։ **Աղազարմ Ն.Մ.,** Նօթեր Եգիպտոսի հայ գաղութին վերայ, Գահիրէ, 1911, էջ 25–32։

8 **Թոփուզյան Հ.,** նշվ. աշխ., էջ 81–82։

9 **Չէյթլեան Ս.,** նշվ. աշխ., էջ 72–73։

երկրի դիրքը միջազգային շուկաներում և վերջ դրեց Օսմանյան առևտրական ցանցից կախմանը, ինչպես նաև նպաստեց Եգիպտոսի տնտեսական անկախությանը[10]:

Պողոս բեյը մեծ ներդրում ունեցավ նաև Եգիպտոսի պետական մտածողության զարգացման մեջ: Նա ներդրում ունեցավ Պատերազմի և Ծովուժի դիվանների ստեղծման գործում, իսկ բանակի կազմակերպման հարցում մեծ մասամբ սուդանցի ստրուկների, Հյուսիսային Աֆրիկայի վարձկանների, ինչպես նաև չերքեզների փոխարեն քաջալերեց տեղացի տարրերի՝ մեծամասամբ ֆելլահների զինվորագրումը: Բանակին միացան նաև հայեր և հույներ[11]:

Պողոս բեյը առաջ է քաշել ու հովանավորել բազմաթիվ հայ գործիչների: Նա էապես օգնել է նաև հայ երիտասարդներին եվրոպական բարձրագույն ուսումնական հաստատություններ կրթության ուղարկելու գործում: Պողոս բեյը նաև ստեղծեց Հանրային Կրթության Գերագույն խորհուրդ, որը Եգիպտոսում բացեց դպրոցներ և մեկ դպրոց էլ Փարիզում, որի տնօրեն նշանակվեց Ստեփան Էֆենդի Ռեսմին (Դեմիրճյան)[12]: Ամեն տարի պետական միջոցներով ուսանողներ էին ուղարկվում Փարիզի վարժարան՝ մասնագիտական ուսում ստանալու և Եգիպտոս վերադառնալով՝ պետական աշխատանք կատարելու համար:

Ըստ պատմաբանների վկայության, Եգիպտոսի ամբողջ եկամուտը վերահսկող Պողոս բեյը պահեց իր անբասիր անունը և երբ, 1844 թ. հունվարին մահացավ, Եգիպտոսի տարածքում 40 օր պետական սուգ հայտարարվեց այդ մեծանուն հայի համար, «որ Եգիպտոսի տնտեսական և քաղաքական կյանքի արդիականացման ու զարգացման համար մեծապես ե-

---

[10] Նույն տեղում, էջ 74–76:

[11] Բանակային և ծովային ուժերի մաս կազմող հայերից հայտնի են Սուդանի կռիվների մասնակից Էդուարդ Հանրի Զոհրաբ փաշան, ով հետագայում նշանակվել է պաշտպանության նախարարի խորհրդական, Նշան Նարգիլեջյանը՝ ծովային սպա, Սուդանի կռիվների մասնակից Բարթամ Յազմաջյանը և այլք: Եգիպտոսի բանակի մեջ ծառայել են նաև զինագործ վարպետներ և բժիշկներ, որոնցից հիշատակվում են դոկտոր Ստեփան Գևորգյանը և Ալեքսանդրիայի նավատորմի ու հիվանդանոցի բժիշկ Հարություն Բեստան բեյը:

[12] Ստեփան Դեմիրճյանը եղել է նաև Մուհամմադ Ալիի խորհրդականը, իսկ 1850–1853 թթ. և 1855–1857 թթ. Եգիպտոսի արտաքին գործերի նախարարը:

դել է օգտակար՝ ծառայելով նվիրվածությամբ թե՛ պատերազմի, թե՛ խաղաղության ժամանակ»[13]:

Պողոս բեյ Յուսուֆյանի հաջորդների մեջ կարևոր նշանակություն է ունեցել քաղաքագետ և բացառիկ կարողություններով օժտված Նուբար փաշա Նուբարյանը, ով 5 տասնամյակ վարել է պետական բարձրագույն պաշտոններ, ունեցել է միջազգային համբավ և մնայուն հետք է թողել Եգիպտոսի արդիականացման մեջ:

Նուբար փաշան (1825–1899 թթ.) ծնվել է Զմյուռնիայում: Ժնևում և Թուլուզում ուսումը ավարտելուց հետո՝ 1842 թ., իր քեռի Պողոս բեյի հրավերով եղբայրների հետ եկավ Եգիպտոս ու սկզբում դարձավ Պողոս բեյի քարտուղարը, իսկ նրա մահից հետո՝ 1844 թ. նշանակվեց փոխարքայի թարգմանիչ և Արտաքին գործերի դիվանատան երկրորդ քարտուղար: Շուտով Նուբար փաշան իր կարողություններով գրավելով փոխարքայի ավագ որդի և բանակի ընդհանուր հրամանատար Իբրահիմ փաշայի ուշադրությունը՝ 1845 թ. դարձավ նրա թարգմանիչն ու քարտուղարը[14]:

Իբրահիմ փաշայի մահից մի քանի ամիս անց մահացավ նաև խեդիվ Մուհամմադ Ալին, և 1848 թ. իշխանությունը փոխանցվեց նրա զավակներից Թուսունի որդի Աբբասին (1813–1854 թթ.): Նոր փոխարքան Նուբարին դարձրեց իր անձնական խորհրդականը և հատուկ առաքելությունների պատվիրակը[15]: 1854 թ. Աբբասին հաջորդեց Մուհամմադ Ալիի որդիներից Սայիդը (1822–1863 թթ.): Սայիդը Նուբար փաշային նշանակեց Փարիզում Եգիպտոսի առևտրական ներկայացուցիչ[16]:

Նուբար փաշայի բեղմնավոր գործունեությունը սկսվեց Իսմայիլ փաշայի (1863–1879 թթ.) կառավարման ժամանակաշրջանում: 1865 թ. նա նշանակվեց Հանրօգուտ շինարարության նախարար: Նուբար փաշան ոռոգման նոր ծրագիր մշակեց, որի արդյունքում ընդարձակվեցին մշակելի հողերը և ապահովվեցին երկրի բարգավաճումն ու եկամուտների ավելացումը: Այս ծրագիրը այնքան արդյունավետ էր, որ Բեհերա նահանգի նոր ջրանցքը կոչվեց նրա անունով Նուբարիա[17]:

---

[13] **Ալպօյաճեան Ա.,** նշվ. աշխ., էջ 68–69:

[14] **Չէյթլեան Ս.,** նշվ. աշխ., էջ 82–83:

[15] **Ալպօյաճեան Ա.,** նշվ. աշխ., 85:

[16] Նույն տեղում, էջ 88:

[17] **Աբրահամյան Ա.,** նշվ. աշխ., էջ 67:

Նուբարը մեծ աշխատանք է տարել նաև Եգիպտոսի քաղաքական անկախությունը պահպանելու և ամրացնելու ուղղությամբ: 1867 թ. թուրքական կառավարությունը նպատակ է դնում նորից Եգիպտոսը վասալական կախվածության մեջ դնել և ջնջել Մուհամմադ Ալիի ձեռք բերած ժառանգական իրավունքը: Նուբարը հարկադրված եղավ գնալ Կոստանդնուպոլիս և այնպիսի վարպետությամբ վարել այդ բանակցությունները, որ կարողացավ ապահովել Եգիպտոսի կուսակալների ժառանգական իրավունքը: Որպես երախտագիտություն փոխարքան Նուբարին շնորհեց փաշայի տիտղոս և նվիրեց բարեբեր ընդարձակ կալվածք. առաջին անգամ էր, որ քրիստոնյան փաշայի տիտղոս էր ստանում[18]:

Նուբարը կատարել է մի շարք բարեփոխումներ արաբ գյուղացու (ֆելլահի) դրության բարելավման ուղղությամբ[19]: Ճիշտ է՝ այս գործում նա հանդիպել է տեղի ֆեոդալական շրջանների ուժեղ դիմադրությանը, սակայն արել է ամեն հնարավորը՝ սահմանափակելու նրանց կեղեքումները: Եգիպտոսի աշխատավոր ժողովուրդը սիրել է Նուբարին և անվանել «Ֆելլահի մարդը», «Ֆելլահի բարեկամը» և «Ֆելլահի հայրը»[20]:

1867 թ. հրամանագրով վարչական կառույցներ հաստատելու իրավասությունը ճանապարհ հարթեց, որ Նուբարը մշակի Եգիպտոսի օրենսդրական բարեկարգումների ծրագիրը և զբաղվի Խառը դատարանների հաստատմամբ (նախքան Նուբարը Եգիպտոսի դատական համակարգը կանոնակարգված չէր): Նուբար փաշան սկսեց բանակցություններ վարել եվրոպական տերությունների հետ, որոնք տևեցին շուրջ 2 տարի՝ շարունակվելով մինչև 1869 թ., երբ նրան հաջողվեց Կահիրեում դատական բարենորոգման միջազգային խորհրդաժողով կազմակերպել, որին մասնակցեցին Ֆրանսիան, Անգլիան, Ավստրիան, Գերմանիան, Իտալիան, Ռուսաստանը և Միացյալ Նահանգները: Դատական բարենորոգման խորհրդաժողովը տևեց 3 ամիս, որը 1870 թ. հունվարին որոշեց, որ առևտրական և քաղաքային հարցերի մեջ Խառը դատարանները վճիռ կայացնելու իրավունք պիտի ունենային տարբեր հպատակության տեր օտարների, ինչպես նաև օտարահպատակների և տեղացիների միջև ծագած վեճերի պարագայում: Իսկ քրեական հարցերի գծով հյուպատոսական դատարանները պետք է զբաղվեին միայն իրենց հպատակների դատերով, տեղական դա-

[18] Նույն տեղում:

[19] **Գասպարյան Ս.,** Սփյուռքահայ գաղթօջախներն այսօր, Ե., 1962, էջ 152:

[20] **Աղազարմ Ն.Մ.,** նշվ. աշխ., էջ 42:

տարաններն էլ պետք է դատեին եգիպտահպատակ քրեական հանցագործներին[21]: Խառը դատարանների բացումը տեղի ունեցավ 1875 թ. հունիսի 28-ին[22]: Այսպիսով կարելի է Նուբար փաշայի այս բարեկարգումը դասել ժամանակակից Եգիպտոսի պատմության դիվանագիտական խոշոր հաջողությունների շարքին:

Նուբար փաշայի ջանքերի շնորհիվ 1873 թ. հատուկ հրովարտակով խեդիվը իրավունք ստացավ այլ պետությունների հետ առևտրական և մաքսային համաձայնագրեր կնքել և անհրաժեշտության դեպքում օտարների հանդեպ կիրառել իրավական պատժամիջոցներ: 1878 թ. Նուբար փաշան նշանակվեց վարչապետ[23]:

Խեդիվ Իսմայիլին փոխարինեց իր որդի Թաուֆիկը (1852–1892 թթ.): Նոր խեդիվի իշխանության ժամանակ (1879–1892 թթ.) տեղի ունեցավ ազգային շարժման ղեկավար Ահմադ Օրաբիի ապստամբությունը, որը Անգլիայի կողմից ճնշվեց, և 1883 թ. Եգիպտոսը անցավ անգլիական հովանու տակ, իսկ հյուպատոս նշանակվեց Իվլին Բերինգը (հետագայում՝ լորդ Քրոմեր): Այս պայմաններում 1884 թ. Նուբար փաշան կրկին նշանակվեց վարչապետ: Լորդ Քրոմերը ցանկանում էր, որ Եգիպտոսի պետական համակարգում անգլիացիները զբաղեցնեն բարձր պաշտոններ, ինչին դեմ էր Նուբար փաշան: Լորդ Քրոմերը չէր հանդուրժում հակաճառությունը, այդ պատճառով Նուբար փաշան վերջինիս համար դարձավ անցանկալի: Թեև 1889 թ. Նուբար փաշան հեռացվեց վարչապետի պաշտոնից, սակայն 1894 թ. խեդիվ Թաուֆիկի որդի Աբբաս 2-րդի իշխանության տարիներին (1892–1914 թթ.) Նուբար փաշան դարձյալ նշանակվեց վարչապետ: 1895 թ. Նուբար փաշան արժանացավ Եգիպտոսի բարձրագույն պատվին՝ Նեղոսի Մեծ շքանշանին, որից հետո հեռացավ քաղաքական ասպարեզից և 4 տարի անց մահացավ Փարիզում, իսկ ավելի ուշ՝ 1904 թ. հունիսի 3-ին, Ալեք-

[21] **Պարթեւեան Ս.,** նշվ. աշխ., էջ 11:

[22] Երեք Խառը դատարաններ սկսեցին գործել Կահիրեի, Ալեքսանդրիայի և Մանսուրայի մեջ, իսկ Վճռաբեկ Ատյանը՝ Ալեքսանդրիայում: Դատարաններում գործածվում էր ֆրանսերենը, իսկ 1905 թվականից՝ անգլերենը: Այս դատարաններում աշխատում էին մեծ թվով հայեր՝ Արթին բեյ Ռեյիզյանը, Արթին էֆենդի Խաչատուրը, Խաչեր բեյ Միքայելյանը, Կարապետ բեյ Ռեյիզյանը, Յուսուֆ բեյ Չրաքյանը, Ստեփան Խաչատուրը, Յուսուֆ բեյ Ազիզը և այլք:

[23] **Չէյթլեան Ս.,** նշվ. աշխ., էջ 95–96:

սանդրիայում տեղադրվեց նրա արձանը, որն այժմ գտնվում է Մուհամմադ Ալիի անվան թատրոնի դիմացի հրապարակում[24]:

Նուբար փաշան սերտ կապեր ուներ եգիպտահայության հետ: Ըստ պատմաբան Արշակ Ալպոյաճյանի, մի առիթով Նուբարը ասել է. «Ես կյանքս նվիրեցի Եգիպտոսին, որովհետև բախտը իմ առաջ այդ գործն է հանել, հրապուրվել եմ նրանով և կապվել նրա հետ: Բայց օտար երկրի մեջ այդ գործունեությունը ինձ երբեք մոռացնել չտվեց, որ ես հայ եմ»[25]:

Հայերի համար Նուբար փաշայի գլխավոր ձեռքբերումը եղավ բարեգործական հաստատությունների կամ վաքֆերի և կտակների վերաբերյալ վիճահարույց հարցերի լուծումը: Գնահատելով իր ազգակիցների տաղանդը՝ Նուբար փաշան խոստումնալից հայ երիտասարդներին միջոցներ էր տրամադրում Եվրոպայում ուսումը կատարելագործելու համար: Նա ապահովում էր նաև 1890-ական թթ. հայերի ջարդերի հետևանքով Եգիպտոսում ապաստանած որբերի կեցությունը և ուսումը: Նուբարի թելադրությամբ էր, որ Կահիրեի թաղական խորհրդի ատենապետ և Խորենյան ազգային վարժարանի տեսուչ Աբրահամ Մուրադյանը 1865 թ. մարտի 16-ից սկսեց հրատարակել «Արմավենի» կիսամսյան՝ դառնալով եգիպտահայ լրագրության հայրը:

Նուբար փաշայի քաղաքական երկարատև գործունեության կարևոր արդյունքը եղավ Եգիպտոսի ազգային գիտակցությունը խարսխել ոչ միայն լեզվի և կրոնի, այլև օրենքի վրա[26]:

Անդրադարձ կատարենք նաև մեկ այլ ականավոր հայ գործիչ Տիգրան փաշա Աբրոյանի կամ դ'Աբրոյի (1846–1904 թթ.) գործունեությանը, ով ծնվել է Կահիրեում և ուսանել Եվրոպայի մի շարք երկրներում[27]: 1868 թ. նա վերադառնում է Եգիպտոս և դառնում Նուբար փաշայի քարտուղարը: Այնուհետև նաստանձնում է Խառը դատարանների կազմակերպության միջազգային ժողովի քարտուղարությունը, իսկ 1873–1876 թթ. վարում Դատական Բարեկարգման հանձնաժողովի քարտուղարությունը: Տիգրանը 1873 թ. բեյի աստիճան ստացավ: Որոշ ժամանակ անց կազմակերպեց Արտաքին գործերի նախարարության դիվանները, այնուհետև նշանակվեց

---

[24] Նույն տեղում, էջ 98–99:
[25] **Ալպօյաճեան Ա.,** նշվ. աշխ., էջ 94:
[26] **Չէյթլեան Ս.,** նշվ. աշխ., էջ 100–103:
[27] **Թոփուզյան Հ.,** նշվ. աշխ., էջ 117:

Արաբական և Եվրոպական թարգմանության վարչության գործավար, իսկ 1881 թ. ղեկավարեց Արտաքին գործերի նախարարությունը[28]:

1883–1884 թթ. Տիգրան փաշան սկսեց հակադրվել Անգլիայի հյուպատոս լորդ Քրոմերի՝ Անգլիայի շահերին նպաստող հրահանգներին: Նա բողոքեց. «Ես եգիպտական նախարար եմ, այլ ոչ թե Անգլիայի կառավարության վարձու պաշտոնյա»: Լորդ Քրոմերը հայ գործչի համարձակությունը չներեց: Արտաքին գործերի նախարարը որքան էլ գնահատված լիներ Եգիպտոսում, պետք է հասկանար, որ եգիպտական նախարարը միայն Անգլիայի հյուպատոսի թույլտվությամբ կարող էր պահել իր պաշտոնը: Տիգրան փաշան նախընտրեց հրաժարվել, սակայն 1885 թ. ընդառաջելով Նուբար փաշայի խնդրանքին, այցելեց Փարիզ և Լոնդոն՝ Եգիպտոսի ելևմտական հարցերը կարգավորելու[29]:

1892 թ. խեդիվ Թաուֆիկին հաջորդած Աբբաս 2-րդը մեծապես գնահատում էր Տիգրան փաշայի՝ հանուն Եգիպտոսի բարօրության մղած պայքարը անգլիացի իշխանավորների դեմ, ինչի շնորհիվ 1893թ. Տիգրան փաշան նշանակվեց վարչապետ: Լորդ Կրոմերը դեմ էր այս նշանակմանը՝ պատճառաբանելով, որ իսլամական երկրի համար քրիստոնյա վարչապետ ունենալը անհարմար է: Խեդիվը հաշվի չառավ այս առարկությունը, և սկսեց խոչընդոտել Տիգրան փաշայի նախաձեռնությունները: Եգիպտոսի շահերը պաշտպանող Տիգրան փաշան դիմեց խեդիվին, որ նա ուրիշ վարչապետ նշանակի: Խեդիվը վարչապետ նշանակեց մեկ այլ հայ քրիստոնյա Նուբար փաշային, իսկ Տիգրան փաշան նշանակվեց Արտաքին գործերի նախարար[30]: Այս առիթով կարելի է նշել, որ 1808–1908 թթ. միջև ընկած ժամանակահատվածում՝ 64 տարի հայ նախարարները վարել են Եգիպտոսի Արտաքին գործերի նախարարությունը: Նա մեծ դեր է խաղացել նաև եգիպտահայ համայնքի կյանքի մեջ: Տիգրան փաշան մահացավ 1904 թ., իսկ 1952 թ. երախտագետ եգիպտահայությունը Նուբար և Տիգրան փաշաների կիսանդրիները տեղադրեց Կահիրեի Ազգային առաջնորդարանի մուտքի մոտ[31]:

---

[28] **Չէյթլեան Ս.,** նշվ. աշխ., էջ 104:

[29] **Ալպօյաճեան Ա.,** նշվ. աշխ., էջ 97:

[30] **Գարտաշեան Ա.,** Նիւթեր Եգիպտոսի հայոց պատմութեան համար, Բ հատոր, Պատմութիւն Եգիպտոսի հայ բարերարներու եւ կրթական հաստատութիւններու, Վենետիկ, 1986, էջ 192:

[31] **Չէյթլեան Ս.,** նշվ. աշխ., էջ 106–109:

Եգիպտոսի կյանքում կարևոր դեր կատարած պետական դեմքերի մեջ իր յուրահատուկ տեղն ունի Յակուբ (Հակոբ) Արթին փաշան (1842–1919 թթ.), ով Եգիպտոսի կրթական համակարգում իր կատարած բարենորոգումների համար կոչվել է «ալ-ուսթազ ալ-քաբիր»[32]: Հակոբը պետական վաստակավոր գործիչ Արթին բեյ Չրաքյանի որդին էր: Հակոբը ծնվել էր Կահիրեում և ուսումը ստացել Փարիզում, իսկ 1866 թ. խեդիվ Իսմայիլի կարգադրությամբ ուղարկվել էր Իտալիա, Ավստրիա, Գերմանիա և Անգլիա՝ հարստացնելու իր գիտելիքները, և վերադառնալով Եգիպտոս՝ աշխատելու պետական հաստատություններում: Որոշ ժամանակ տարբեր բաժանմունքներում աշխատելուց հետո Կրթության նախարարությունում սկսվեց նրա երկարամյա գործունեության շրջանը[33]:

Քաղաքներում և գյուղերում բացվող դպրոցների համար ուսուցիչներ գտնելու նպատակով Հակոբ Արթին փաշայի նախաձեռնությամբ հիմնվեց Կահիրեի պետական ուսուցչանոցը[34]: Հակոբ Արթին փաշայի կարգախոսը հետևյալն էր. «Եթե փոքր ղեկը կարող է իրենից հազար անգամ մեծ նավի ուղղությունը որոշել, ապա երկրի ուսյալ տարրը կարող է առաջնորդել զանգվածների»: Դրա հիման վրա նա փորձ կատարեց բարձրացնել ուսուցիչների կրթական մակարդակը և նախակրթարանների ուսուցիչների համար պահանջեց մուտքի քննություն: Նա մեծապես բարելավեց ուսուցիչների նյութաբարոյական վիճակը: Պետական ուսուցչանոցի հաջողությունը այնքան մեծ էր, որ նույն սկզբունքներով հիմնվեցին նաև ուրիշները[35]:

Հակոբ Արթին փաշան կարևորություն էր տալիս աղջիկների ուսմանը: 1873 թ. խեդիվ Իսմայիլի երրորդ կնոջ Չեշմե Աֆեթիի հովանավորությամբ բացվեց Եգիպտոսի աղջիկների առաջին դպրոցը՝ Սիուֆիեն: Նրա կարևոր ձեռքբերումը եղավ Եգիպտոսի կրթական ծրագրի մշակումը, որի անմիջական արդյունքը դարձավ կրթական աննախադեպ առաջադիմությունը: Մշակութային դաստիարակության բնագավառում, նա առաջինը հավաքեց ու հրատարակեց ժողովրդի մտածելակերպն ու ապրելակերպը արտահայտող և բերնեբերան փոխանցվող հեքիաթները: Հակոբ Արթին փաշան մասնակցություն է ունեցել նաև եգիպտական մշակութային հաստատությունների հիմնադրմանն ու զարգացմանը: Դրանցից են Եգիպտական

[32] **Ալպօյաճեան Ա.,** նշվ. աշխ., էջ 138–140:
[33] **Չէյթլեան Ս.,** նշվ. աշխ., էջ 110:
[34] **Գարտաշեան Ա.,** նշվ. աշխ., էջ 244:
[35] **Չէյթլեան Ս.,** նշվ. աշխ., էջ 112:

կանառը, Պետական մատենադարանը, Հնությունների թանգարանը, Արաբական արվեստի թանգարանը, որի սրահներից մեկը կոչվում է իր անունով[36]:

Հակոբ Արթին փաշան մեծ դեր է կատարել նաև եգիպտահայության կրթամշակութային կյանքի աշխուժացման գործում և մեծ աջակցություն է ցույց տվել Արևմտյան Հայաստանում տեղի ունեցած ջարդերի հետևանքով Եգիպտոսում ապաստանած հայ գաղթականներին[37]:

Մյուս նշանավոր հայ գործիչը Նուբար փաշա Նուբարյանի որդի՝ Պողոս Նուբար փաշան է (1851–1930 թթ.), ով նույնպես պետական բարձր պաշտոններ զբաղեցրեց, դարձավ ոչ միայն եգիպտահայ, այլև համահայկական չափերով երևելի դեմք և ստեղծեց հայության հաջորդ սերունդներին ծառայելու կառույց՝ Հայ Բարեգործական ընդհանուր Միությունը:

Ֆրանսիայում ուսումը կատարելագործելով՝ Պողոս Նուբարը 1878 թ. վերադարձավ Եգիպտոս և զբաղեցրեց Երկաթուղիների վարչության տնօրենի պաշտոնը: Ժամանակի ընթացքում նա նպաստեց նոր երկաթգծերի ստեղծմանը և վարչական բարեկարգմանը: Հետագայում Պողոս Նուբարը մասնակցեց Երկրագործական ընկերության, ինչպես նաև 1896 թ. Ալեքսանդրիայի Ռամլեի հանրակառքերի և Մենզելեի հողերի ջրարբիացման ու շահագործման ընկերության կազմավորմանը: Նա կազմեց նաև ոռոգման ծրագրեր Կահիրեի Ջրի ընկերության համար[38]:

Հալածանքներից փախչող և կոտորածներից փրկված հայության բեկորների հանդեպ հոգատարությունը կազմել է Պողոս Նուբար փաշայի ազգային գործունեության առանցքը: 1906 թ. մարտի 4-ին Գալուստյան ազգային վարժարանի Բուլակի շենքի հիմնադրման առիթով նա իր ճառում հայտարարեց Հայկական Բարեգործական Ընդհանուր Միության ստեղծման մասին: Այս միության նպատակն էր օգնել հայերին և նրանց ցուցաբերել նյութական, մտավոր ու բարոյական աջակցություն: Բացի այս միությունից, բացվեցին նաև այլ միություններ, որոնք եգիպտահայությանը դարձրեցին սփյուռքի նշանավոր գաղթավայրերից մեկը: Հետզհետե եգիպտահայության ծոցում կազմված միությունները ճյուղավորվեցին և այլ գա-

[36] **Թոփուզյան Հ.,** նշվ. աշխ., էջ 117–118:
[37] **Չէյթլեան Ս.,** նշվ. աշխ., էջ 113–116:
[38] Նույն տեղում, էջ 117:

ղթավայրերի մեջ ստեղծեցին մասնաճյուղեր՝ միշտ ծառայելով հայության վերելքին[39]։

Պողոս Նուբար փաշան Հայկական Բարեգործական Ընդհանուր միության նախագահի պաշտոնում մնաց մինչև 1928 թ.։ Այնուհետև նա շարունակեց ծառայել ազգային նպատակներին և 1930 թ. Փարիզում կառուցել տվեց Մարի Նուբար հայ ուսանողական տունը։ Իր ամբողջ կյանքը իր ազգի ցավերով ապրած և հայության բարօրությանը նվիրված մեծանուն հայը մահացավ Փարիզում 1930 թ.[40]։

Ամփոփելով՝ կարելի է եզրահանգել, որ, չնայած 19-րդ դարի սկզբին Եգիպտոսի փոքրամասնությունների մեջ հայերը թվաքանակով ամենասակավն էին, սակայն նրանց մասնակցությունը Եգիպտոսի զարգացման և պետականության պահպանման գործում համարվում է բեկումնային և անգնահատելի։ Անկախ կրոնական և մշակութային տարբերություններից՝ պետական կյանքին մասնակցության, կազմակերպչական ունակությունների, ինչպես նաև վայելած հեղինակության շնորհիվ հայերին հաջողվել է վայելել Եգիպտոսի ղեկավարության վստահությունն ու զբաղեցնել կարևոր դեր պետական կառավարման համակարգում, նշանակալի մասնակցություն ունենալ կարևորագույն բանակցություններում, արտերկրում ունեցած կապերի շնորհիվ բարելավել տնտեսական, մասնավորապես՝ առևտրային հարաբերությունները։ Զբաղեցնելով բարձր պաշտոններ պետական ու հասարակական ոլորտներում՝ եգիպտահայերը շարունակել են դրսևորել իրենց հավատարմությունը ապաստան տված երկրի և իրենց սկզբունքների հանդեպ։

19-րդ դարում Եգիպտոսում հաստատված հայ քաղաքական, հասարակական ու մշակութային գործիչները, լինելով իրապես հայրենասեր և ազգային շահերի նվիրյալներ՝ ստեղծեցին հիրավի ազդեցիկ համայնք և իրենց ստեղծած արժեքներով էապես օգնեցին Օսմանյան կայսրության տեղահանումներից և ջարդերից փրկված հայրենակիցներին։ Նրանք դարձան ոչ միայն Եգիպտոսի, այլ նաև սեփական ազգի պարծանքը՝ վայելելով եգիպտացիների և հայ համայնքի վստահությունն ու հարգանքը առ այսօր։

[39] Նույն տեղում, էջ 119–123։

[40] **Գարտաշեան Ա.,** նշվ. աշխ., էջ 198։

## THE ARMENIANS' CONTRIBUTION TO THE FORMATION OF EGYPT AS A STATE IN THE XIX–XX CENTURIES

AZIZYAN KH.

**Summary**

The 19th and 20th centuries turned out to be momentous in the history of Egypt as it was within this period that Egypt gained its independence, freeing itself from the oppression of the Ottoman Empire. The independence was reflected in a range of structural reforms in the system of the government as well as in the transformation of socio-economic sphere. The outstanding representatives of the Armenian Diaspora in Egypt played a major role in the efficient solution of the aforementioned problems, having made a considerable contribution to the military, socio-economic development of the country. Moreover, their activity was directed to the spiritual renaissance of the members of the Armenian Diaspora of Egypt, who had survived the Genocide.

## ВКЛАД АРМЯН В СТАНОВЛЕНИЕ ГОСУДАРСТВЕННОСТИ ЕГИПТА В XIX–XX ВЕКАХ

АЗИЗЯН Х.

**Резюме**

В истории Египта XIX–XX века оказались судьбоносными, поскольку именно в этот период Египет обрел независимость, избавившись от гнета Османской империи, что нашло отражение в ряде структурных реформ в государственной системе, а также преобразований в социально-экономической сфере. В успешном решении названных проблем существенную роль сыграли видные представители Армянской диаспоры Египта, внесшие значительный вклад в военное и социально-экономическое развитие страны. Помимо этого их деятельность была направлена на духовное возрождение Армянской диаспоры Египта, пережившей геноцид.

# ԼԻԲԱՆԱՆԻ ՀԱՅ ԳԱՂԹՕՋԱԽԻ ՀԻՄՆԱԽՆԴԻՐՆԵՐՆ «ԱԶԴԱԿ» ԵՎ «ԶԱՐԹՕՆՔ» ՊԱՐԲԵՐԱԿԱՆՆԵՐՈՒՄ (1965 և 2015 թթ.)

ԱՎԱԳՅԱՆ Գ.
gayaneavakyan@gmail.com

20-րդ դարի առաջին կեսից լույս տեսնող «Ազդակ» և «Զարթօնք» թերթերը շարունակում են տպագրվել նաև մեր օրերում՝ լուսաբանելով լիբանանահայության հիմնախնդիրները և մասնավորապես այնպիսիք, որոնք կապված են ազգային ինքնության պահպանման հետ: Հրապարակումների ուսումնասիրությունը թույլ է տալիս բացահայտել ինչպես ազգային ինքնության պահպանման տեսլականի փոփոխությունը, այնպես էլ երկու պարբերականների մոտեցումների ընդհանրությունը:

***Առցանց հասանելիություն***

Լիբանանահայ 2 պարբերականները ժամանակի մարտահրավերներին ընդառաջ են գնացել՝ տպագիր թերթ հրատարակելուց բացի հայտնվելով առցանց տիրույթում: Azdagdaily.com կայքում նյութերը զետեղված են տարբեր խորագրերի ներքո, բացի այդ, կայքում տեղադրված են տվյալ օրվա տպագիր թերթը, անգամ արաբերեն տարբերակը՝ PDF ձևաչափով, ինչպես նաև Սփյուռքին կամ ՀՅԴ-ին առնչվող տեսանյութեր: Թերությունն այն է, որ տպագիր տարբերակի էլեկտրոնային արխիվ չկա, իսկ կայքի նյութերի արխիվից օգտվելն անհարմար է:

Ragmamoul.net հասցեում, որտեղ զետեղված են ՌԱԿ պաշտոնաթերթերի PDF տարբերակները, կարելի է գտնել նաև «Զարթօնքը», քանի դեռ թերթի առանձին կայքը ձևավորման փուլում է: Հետևաբար չենք կարող դիտարկել «Զարթօնքի» գործունեությունը որպես էլեկտրոնային կայքի՝ ի տարբերություն «Ազդակի»: Վերջինը ներակայացված է նաև «Facebook», «Instagram», «Twitter» սոցիալական ցանցերում և ունի բջջային հավելված: Այսինքն՝ ամենուր իր ընթերցողի հետ է: «Զարթօնքը» միայն ֆեյսբուքյան էջ ունի:

Երկու պարբերականները դիտարկվող ժամանակշրջաններում արտացոլել են Լիբանանում բնակվող հայերի կյանքը, վերհանել խնդիրներն ու

լուծումներ առաջարկել։ Մենք առանձնացրել ենք ազգային ինքնության հիմնախնդիրը՝ տրոհելով լեզվի և կրթության հարցերը։

***Ինքնության պահպանում***

Ինքնության պահպանման խնդրի լուսաբանման առանցքը թերթերը չեն փոխել 50 տարիների ընթացքում, սակայն որոշ հարցեր ավելացել են։ 1965 թ. տարբեր գաղութների միջև կապի ամրապնդման գաղափարն էր հիմնաքարային[1]։ 2015-ին, գլոբալացման հորձանուտում հայտնվելով, հայի տեսակի կորուստն է մտահոգիչ[2]։ Երկու դեպքում էլ թերթերը գործնական քայլեր են առաջարկում՝ կա՛մ իրավիճակը կանխելու, կա՛մ նոր պայմաններին համապատասխան գործելու համար։ Մասնավորապես՝ «Ազդակի» դիտարկմամբ, տնտեսապես ապահով կյանքի համար Արևմուտք տեղափոխված Մերձավոր Արևելքի ուժեղ համայնքների հայերը նոր շունչ և կազմակերպվածություն կհաղորդեն ավելի երերուն դիրքերում գտնվողներին։ Հատկանշական է, որ «Սփիւռքը նոր պատկերով» հոդվածում[3] ազգային ռազմավարություն մշակելու և Հայ դատն առաջ տանելու գաղափարները զուգահեռաբար են զարգանում, չեն տարանջատվում, և ամենակարևորը՝ Սփյուռքին գործուն դեր է վերագրվում ազգային հիմնահարցերի շրջագծում։ Թերթն անգամ հուշումներ է տալիս քաղաքական մտքի կերտողներին, որ գաղթօջախների վերակազմակերպման փաստն օգտագործեն վերոնշյալ գաղափարների իրագործման համար։

Մեր օրերում նկատելի է «Ազդակի» և «Զարթօնքի» վճռական դիրքորոշումը, որի համաձայն՝ ինքնության կորստից սփյուռքահայությանը փրկելու միակ ճանապարհը կազմակերպված հայրենադարձությունն է, իսկ զբոսաշրջային նպատակով այցերն իմաստազուրկ են։ Ի տարբերություն 1965 թ., երբ խորհրդային կարգերի անթաքույց քննադատ ՀՅԴ պաշտոնաթերթը Խորհրդային Հայաստան հայրենադարձության առավելապես բացասական կողմն էր ընդգծում՝ մերօրյա «Ազդակում» Սփյուռքի նոր սերնդի մեջ հայրենիք ներգաղթելու և անկախ Հայաստանի հետ կապն ամրապնդելու գաղափարն է սերմանվում։ Միաժամանակ, 2015 թ.-ին արդեն քննադատությունն ուղղվում է ՀՀ իշխանություններին՝ հայրենադարձությունը հա-

[1] **Խմբագրական.** Ուխտաւորները, Ազդակ, Բէյրութ, 1965, 22 մայիսի։

[2] **Զ.Պ.,** Խմբագրական «Գանձասար»-ի՝ դեկտեմբեր Բ./2015. Սփիւռքը նոր պատկերով, Ազդակ (azdagdaily.com), 2015, 19 դեկտեմբերի։

[3] Նոյն տեղում։

մակարգված չկազմակերպելու, ազգի իրավունքները չպաշտպանելու, ինչպես նաև կոռուպցիայի պատճառով արտագաղթը չկանխելու համար[4]: Անգամ «Զարթօնքը», որը դեռ 1965-ին էր Սփյուռքի փրկությունը տեսնում հայրենադարձության մեջ և գովերգում էր Խորհրդային Հայաստանը, այժմ քննադատում է անկախ հանրապետության քրեաօլիգարխիկ համակարգը[5]: Ուստի, թերթը Սփյուռքի ազգային դիմագծի պահպանման և Հայոց ցեղասպանության միջազգային ճանաչման հարցերի լուծումը շղթայաբար կապում է պետության ինքնամաքրման և գաղթօջախների համախմբման հետ:

«Ազդակի» 2015 թ. հրապարակումներում նկատելի է նաև Սփյուռքի՝ հայրենիքից ոչ պակաս կարևորությունն ընդգծելու, անգամ Սփյուռքի իրավունքներն ու խնդիրներն առաջնային դարձնելու միտում: ««Սփիւռք-Համասփիւռքեան հիմնադրամ» վերնագրով հոդվածից[6] կարելի է եզրակացնել, որ հոդվածագիրը ոչ թե տարբեր ջոկատների է տարանջատում Սփյուռքը և Հայաստանը, այլ պարզապես խելամիտ գնահատում է իրավիճակը՝ դիմադրելով Սփյուռքը որպես ֆինանսավորման աղբյուր դիտարկելու՝ պետական գործիչների դիրքորոշմանը: Թեև չափավոր, սակայն ակնհայտ քննադատության շերտ կա տողերում, որոնք վերաբերում են Հայաստանի և Արցախի համար ֆինանսական օժանդակության հրապարակային կազմակերպմանը, Սփյուռքի մեծահարուստների նվիրաբերումներին՝ ոչ այնքան կարևոր ձեռնարկների համար: Դրան հակառակ, պարզվում է, գաղթօջախի վարժարանը փակվելուց փրկելու համար անհրաժեշտ ավելի փոքր գումարը համայնքների մեծահարուստները տնտեսում են: Այսինքն՝ կեղծ հայրենասիրությանն ու փառասիրությանը հակակշռող նժարին դրվում է գաղթօջախներում ազգային դիմագիծը փրկելու համար գործուն քայլերի ձեռնարկումը: Հոդվածագրի մտահոգությունից կարելի է ենթադրել, որ ոչ բոլորն են գիտակցում Սփյուռքին սպառնացող վտանգը, որը երբեմն հենց իրենք են խորացնում: Մասնավորապես՝ Եվրոպայի հայերը տարանջատում են

[4] **Պալեան Յ.,** Սփիւռքներու եւ Հայաստանի տեղատուութիւնները՝ ղեկավարումի տագնապի հետեւանք, Ազդակ, 2015, 13 հոկտեմբերի:

[5] **Տէրտէրեան Մ. Գ.,** Դարադարձի նոր հարցադրում, նախ եւ առաջ… ինքնաբուժում, Զարթօնք, Բեյրութ, 2015, 30 ապրիլի, 4 մայիսի:

[6] **Քասունի Ե. Հ.,** Տեսակէտ. «Սփիւռք»-Համասփիւռքեան Հիմնադրամ, Ազդակ (azdagdaily.com), 2015, 7 նոյեմբերի:

իրենց Մերձավոր Արևելքից եկած սփյուռքահայերից[7]: Սփյուռքում ազգային հզոր կառույցների բացակայության, եղածների անմիաբանության մասին խոսելիս հեղինակը նրբորեն վերհանում է կուսակցությունների պառակտվածության խնդիրը և նոր մտքի անհրաժեշտություն տեսնում:

***Կրթական կյանք***

Կրթության հետ կապված նույնիսկ փոքր իրադարձությունը երկու թերթերում էլ մեծ արձագանք է ստացել դիտարկվող ժամանակաշրջաններում: Մատուցման տեսանկյունից՝ «Զարթոնքում» կրթական հարցերի լուսաբանումը 2015 թ. և հիսուն տարի առաջ կտրուկ չի տարբերվում. նկատվում է միևնույն երկարաշունչ ոճն ու ոչ այնքան կարևոր մանրամասներով նյութի ծանրաբեռնումը[8]: ՀՅԴ «Ազդակ» թերթի համեմատությամբ ՌԱԿ պաշտոնաթերթն առավել ծավալուն է լուսաբանում կրթական միջոցառումները՝ հիշատակելով նաև կուսակցության անդամ-բարերարներին: Դա չի նշանակում, թե «Ազդակը» զերծ է մնում նման գործելաոճից. ՀՅԴ-ի նախաձեռնած կամ ՀՄԸՄ սկաուտական խմբերի մասնակցությամբ հանդիպումներն ու դասախոսությունները նույն երկարաշունչ ոճով են գրվում նաև հիսուն տարի անց[9]: Այդուհանդերձ պետք է նկատել, որ համացանցում հայտնվելուց հետո վարժարանների վերաբերյալ իրադարձային հրապարակումներում մեծ մասամբ պահպանվում է առցանց մամուլին բնորոշ հակիրճությունը: Իսկ կրթության հարցերի վերաբերյալ վերլուծական նյութերը երկու թերթերում էլ առաջ և հետո՝ արժեքավոր են:

---

[7] **Պալեան Յ.,** Սփիւռքները եւ Հայաստանի տեղատուութիւնները՝ ղեկավարումի տագնապի հետեւանք, Ազդակ (azdagdaily.com), 2015, 13 հոկտեմբերի:

[8] Տե՛ս «ՌԱԿ Մերձանեան ակումբի ճաշկերոյթը», Զարթօնք, 1965, 16 սեպտեմբերի, «ՀԲԸՄ-ի «Երուանդ Հիւսիսեան հիմնարկ հայագիտական ուսմանց»-ի պաշտօնական բացումը», Զարթօնք, 1965, 9 նոյեմբերի: «Լիբանանահայ վարժարաններու երկրորդականի բաժիններու հունձքի աննախընթաց հանդիսութիւն՝ 296 շրջանաւարտով», - Զարթօնք, 2015, 13 մայիսի:

[9] Տե՛ս «Հայկազեան հայագիտական հանդէսի ԼԵ (353-րդ) հատորի շնորհահանդէսը», Ազդակ (azdagdaily.com), 2015, 30 դեկտեմբերի, «Համազգայինի «Վահէ Սէթեան» հրատարակչատան 2015 տարեշրջանի հունձքի ներկայացում», Ազդակ, (azdagdaily.com), 2015, 25 դեկտեմբերի, Սկաուտական համոզիչ «Աւարտաճառ»՝ խարոյկին շուրջ, Ազդակ (azdagdaily.com), 2015, 5 հոկտեմբերի:

«Ճանչնանք լիբանանահայութեան կրթական հաստատութիւնները» հոդվածի[10] օրինակով տեսնում ենք, որ 1965 թ. «Ազդակում» հիմնականում գովերգվում են լիբանանահայ վարժարանները և դրանց առատությունը: Հոդվածում նկատվում է Գ. Գյուլբենկյան հիմնադրամի, ինչպես նաև երեք եկեղեցիների հոգևոր առաջնորդների գովաբանություն՝ կրթական կյանքին աջակցելու համար: Անգամ համարձակ միտք է արտահայտվում, որ Լիբանանի հայ համայնքը կարող է դառնալ Սփյուռքի կենտրոն, քանի դեռ մայր հայրենիքն անհրաժեշտ ազատությունը չունի՝ ողջ հայության ազգային գործերը ղեկավարելու համար: Այսինքն՝ թերթն ակնարկում է, որ ԽՍՀՄ կազմում գտնվող Հայաստանը բավականաչափ մտահոգված չէ սփյուռքահայության խնդրով կամ, ավելի ճիշտ, կաշկանդված է խորհրդային կապանքներով:

Ի հակադրություն այս հոդվածի՝ «Օտար վարժարաններու հայ տղաքը» հրապարակման մեջ[11] «Ազդակն» ահազանգում է Լիբանանի դպրոցների փակման և կրթության որակի անկման մասին: Այսինքն, դժվար է խոսել Լիբանանի՝ որպես Սփյուռքի կրթական կենտրոնի մասին: Թեև հոդվածագիրը մտահոգված է, որ օտար վարժարաններում սովորող երեխաները կորցնում են ազգային ինքնությունը, սակայն պահպանում է անաչառությունը և նկատում, որ այդտեղ նրանք բարձրորակ կրթություն են ստանում: Նա խորը ցավով է ընդունում, որ ստեղծված իրավիճակի պատճառներից մեկը կրթության ցածր որակն է Սփյուռքի վարժարաններում, և փորձում է արդարացում գտնել: Հեղինակը քննադատում է նոր հարստացած հայերին, ովքեր երեխաներին տանում են թանկարժեք օտար վարժարաններ՝ դրանով իսկ շեշտելով դասակարգային առավելությունն ավելի աղքատ հայ ընտանիքների համեմատ: Ընդսմին՝ քննադատության ալիքը հասնում է նաև համայնքի մշակութային, երիտասարդական միություններին ու խոշոր կազմակերպություններին: Գովելի է, որ հեղինակը նաև կառուցողական լուծում է առաջարկում:

Հիսուն տարի անց պարբերականը ոչ թե հայկական վարժարաններն արդարացնելու ուղիներ է փնտրում, այլ հստակ մատնանշում է թերություններն ու դրանց կործանարար հետևանքները: Դրանցից մեկը հայեցի կրթության հստակ ծրագրի բացակայությունն է: Դպրոցը դիտարկելով որպես

[10] **Մելիտինեցի Գ.,** Ճանչնանք լիբանանահայութեան կրթական հաստատութիւնները, Ազդակ, 1965, 22 հունիսի:

[11] **Պալեան Յ.,** Օտար վարժարաններու հայ տղաքը, Ազդակ, 1965, 20 հունվարի:

*избранных»* и т. д. (XX, 278). Превосходство «западного» над «незападным» – этот взгляд с высоты европейского величия прослеживается в оценке всего: религии, одежды, быта, пищи, включая особенности национального характера и склада мышления, а также характеристики отдельных личностей.

Что касается армян - католиков (*«армянские монахи, как правило, схизматики или католики. Схизматики придерживаются правил Св.Василия, католики же – Св. Доминика»* (XX, 271)), то к ним у Турнефора особое отношение: в данном случае «чужие» воспринимаются как «свои» и включаются в понятие «мы». *«Около 1320 года,* – пишет Турнефор, – *представитель доминиканского ордена, отец Варфоломей, в пору правления папы Иоанна XXII, обратил в католическую веру многих армян, и этот великий миссионер учредил множество монастырей своего ордена; некоторые все еще находятся в области Нахичевана, между Тебризом и Ереваном... С целью воспитания достойных людей в Рим время от времени посылаются молодые люди для приобщения к науке и воспитания в духе ордена Св. Доминика. Каждый монастырь находится в пригороде, и в этой части города насчитывают приблизительно 6 тысяч католиков. Эта небольшая паства живет праведно... она достаточно образована и нет на всем Востоке лучше христиан, чем они»* (XX, 271–272).

Репрезентируемый Турнефором национальный образ армянина, безусловно, субъективен: у него свое собственное «прочтение» и толкование образа, однако в то же время это продукт коллективного, европейского восприятия. Оценка Турнефором национального характера на основе наблюдений и контактов в какой-то степени является типичной для литературы путешествий той эпохи. Турнефор отчасти исходил из уже существующих о народах, в частности, об армянах, представлений – коллективных гетеростереотипов, транслируемых литературой путешествий. Почти все без исключения путешественники интересовались особенностями национального характера народов, с которыми им предстояло столкнуться на Востоке. Однако следует дифференцировать их цели в постижении национальной специфики. Купцу-путешественнику нужно было знать, с кем он будет заключать торговую сделку, насколько народ честен и надежен. Миссионера в первую очередь интересовало, насколько народ силен и несгибаем в своей вере и предан своей национальной церкви и, в связи с этим, насколько реальна возможность изменения его религиозной ориентации – обращения в католичество. Что же касается Турнефора – ученого-систематика, то он, основы-

ваясь на фактах, проявляет системный подход в изучении и отображении национальных типов, говоря языком ботаников (каковым являлся Турнефор) – видов, с установлением их сходства и различий. Опираясь на общие принципы типологии, он пытается выделить устойчивые характеристики различных этносов. И, как это характерно для литературы путешествий рассматриваемого периода, предоставляющей богатый материал по формированию представлений о восточных народах, наблюдения путешественника обобщаются в качестве типичного для данной культуры явления.

## MANIFESTATIONS OF THE ARMENIAN NATIONAL CHARACTER IN TRAVEL LITERATURE AS EXEMPLIFIED BY "A VOYAGE INTO THE LEVANT" BY JOSEPH DE PITTON TOURNEFORT

KARAGEZYAN G.

**Summary**

A well-known French traveler, Member of the Paris Academy of Sciences, professor of botany at the Royal Garden of Medical Plants in Paris, Joseph Pitton de Tournefort made a journey to Greece, Asia, Persia, Georgia and Armenia in 1700–1702. His account of the journey ("Relation d'un voyage du Levant") was presented in the form of letters (22 letters, addressed to his client, Louis Philipp de Pontchartrain, the Chancellor of France. The Armenian part of his "*Relation d'un voyage du Levant*" is mainly contained in letters 18 to 22, however the mentions of the Armenians and representation of Armenian-related geographic and cultural realities can be encountered along his whole itinerary in Asia Minor.

The trip to Levant by Tournefort was mainly aimed at investigating problems of natural science. However, being a man of broad outlook and inquisitive mind he could not skip questions beyond the scope of his scientific interests. Proceeding from the principles of general typology, he attempts to identify different ethnic formations describing their characteristic features. Appropriate to the travell literature of the period, massive data on the Eastern nations, the Armenians in particular are referred to, and the description of a single case as typical of a given culture is presented.

# ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ԲՆԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՈՒՂԵԳՐԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՈՒՄ (ԸՍՏ ՏՈՒՐՆԵՖՈՐԻ «ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ ԴԵՊԻ ԼԵՎԱՆՏ» ԳՐՔԻ)

ԿԱՐԱԳՅՈԶՅԱՆ Գ.

**Ամփոփում**

Ֆրանսիացի հայտնի ճանապարհորդ, բուսաբանության պրոֆեսոր, Փարիզի գիտությունների ակադեմիայի անդամ Ժոզեֆ Պիտոն դե Տուրնեֆորը 1700–1702 թթ. ճանապարհորդել է Հունաստանով, Փոքր Ասիայով, Պարսկաստանով, Վրաստանով և Հայաստանով: Ուղեգրության նկարագրությունը («Ճանապարհորդություն դեպի Լևանտ») նա ներկայացրել է Ֆրանսիայի կանցլեր Լուի Ֆիլիպ դե Պոնշարտրենին ուղղված նամակների տեսքով (22 նամակ): «Ճանապարհորդության» հայկական հատվածը հիմնականում ընդգրկված է 18-ից 22-րդ նամակներում, թեև հայկական աշխարհի հետ կապված աշխարհագրական և մշակութային իրականության արտացոլումը կարելի է գտնել Փոքր Ասիայով նրա անցած երկար ճանապարհի նկարագրության տարբեր հատվածներում: Տուրնեֆորի շրջագայությունը Լևանտում նպատակ ուներ հիմնականում հետազոտելու բնագիտական խնդիրներ: Սակայն լինելով լայնահայաց և պրպտուն մտքի տեր մարդ, նա չէր կարող չանդրադառնալ նաև այլ խնդիրների: Հիմնվելով տիպաբանության սկզբունքների վրա, նա փորձում էր առանձնացնել ազգերի կայուն բնութագրերը: Եվ, ինչպես բնորոշ է այդ ժամանակաշրջանի ուղեգրական գրականությանը, դիտարկվող եզակի դեպքը ներկայացնում է, որպես տվյալ մշակույթի համար տիպական երևույթ:

# ՓԱԽՈՒՍՏԸ ԵԳԻՊՏՈՍ. ՀԻՍՈՒՍԻ ՀՐԱՇԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԵՐԵՆ «ՄԱՆԿՈՒԹԵԱՆ ԱՒԵՏԱՐԱՆՈՒՄ»

ՄԱՄՅԱՆ Մ.
marimamyan87@gmail.com

Հիսուսի կյանքը պատկերող բազմաթիվ գեղարվեստական, գիտահանրամատչելի և այլ բնույթի ֆիլմերն ու գրքերն, անշուշտ, ստեղծվել և ստեղծվում են հիմնականում նորկտակարանային տեղեկությունների հիման վրա: Այնուամենայնիվ, վերջիններս չեն տալիս Հիսուսի կյանքի մանրամասները, և այստեղ է, որ օգնության են գալիս պարականոն գրվածքները, որոնք թեև հիմնականում մտացածին են, այնուհանդերձ, պարականոնների միջոցով է հնարավոր է դառնում փոքրիշատե պատկերացում կազմել Հիսուսի կյանքի, հատկապես՝ մանկության տարիների մասին: Պարականոնները գրավոր աղբյուրների և ժողովրդի մեջ տարածված ավանդությունների հիման վրա ներկայացնում են Հիսուսի կյանքի պատմությունը՝ ծննդից մինչև հարություն, մի ամբողջ շղթա, որ ամեն մի քրիստոնյա ժողովուրդ ներկայացրել է յուրովի:

Այս առումով Հիսուսի և նրա ծնողների՝ Եգիպտոս փախուստի մասին Մատթեոս ավետարանչի հպանցիկ ակնարկը (Բ, 13–15) ևս բացառություն չէ և պատկանում է սուրբգրային դրվագների այն շարքին, որոնք ընդարձակվել ու հարստացել են պարականոնների և առաջին հերթին՝ այսպես կոչված, *մանկության* ավետարանների շնորհիվ[1]: Այս գրվածքների շարքին է

[1] Այս գրվածքների շարքին են պատկանում *Հակոբոսի նախաավետարանը* (հայերեն թարգմանությունների համար տե՛ս *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց,* կազմ. **Տայեցի Ե**., *Թանգարան հայկական հին և նոր դպրութեանց, Բ,* Վենետիկ, 1898, էջ 237–264, (այսուհետ՝ *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց:* Հայերեն Նախաավետարանն իր հերթին թարգմանվել է լատիներեն, տե՛ս **Stricker de E**., *La forme la plus ancienne du Protévangile de Jacques. Recherches sur le papyrus Bodmer 5,* latin trans. par ***Quecke H***., Bruxelles, 1961, pp. 441–473, և անգլերեն՝ տե՛ս **Terian A**., *The Armenian Gospel of the Infancy, with Three Early Versions of the Protevangelium of James*, Oxford, 2008, pp. 150–170), *Թովմայի* (լատիներեն և հունարեն Ա և Բ տարբերակները տե՛ս **Tischendorf**

դասվում նաև հայկական *Մանկութեան աւետարանը*, որ, թեև հայկական ծագում չունի և հավանաբար թարգմանվել է ասորերեն բնագրից[2], այնուհանդերձ, հայ հեղինակներն այստեղ բազմաթիվ հավելումներ են արել։ Ուստի և պատահական չէ, որ հայկական պարականոնը յուրովի է ներկայացնում սուրբ ընտանիքի՝ Եգիպտոսում, նրա սահմանակից երկրներում և ապա նաև՝ իրենց հայրենի երկրում անցկացրած տարիները և այս ժամանակաշրջանում տեղի ունեցած դեպքերը։ Ընդ որում՝ այս պատմությունը ներկայացնելիս հայերեն պարականոնը *մանկության* մյուս ավետարանների շարքում աչքի է ընկնում իր հագեցվածությամբ՝ ինչպես սուրբ ընտանիքի անցած ուղու, այնպես էլ մանուկ Հիսուսի կատարած հրաշագործությունների մանրամասն նկարագրությամբ։

Հայկական *Մանկութեան աւետարանը*, թեև որոշակի համանմանություններ ունի նաև մեզ հասած *մանկության* մյուս ավետարանների հետ, այնուամենայնիվ, դրանց միջև առկա տարբերություններն այնքան ակնառու են, որ երբեմն համեմատության եզրեր գտնելը շատ ավելի դժվար է։ Հայկա-

---

**C**., *Evangelia Apocrypha, adhibitis plurimis codicibus graecis et latinis maximam partem nunc primum consultis atque ineditorum copia insignibus,* Lipsiae, 1874, pp. 140–163; 164–180), *կեղծ-Մատթեոսի* (նույն տեղում, էջ 51–112), *Մարիամի ծննդյան* (նույն տեղում, էջ 113–121), *արաբական* (տե՛ս **Peeters P**., *Evangiles apocryphes*, vol. II. Paris, 1914, pp. 1–65), *ասորական* (տե՛ս **Budge W**., *The History of the Blessed Virgin Mary and the History of the Likeness of Christ, which the Jews of Tiberias made a mock at*, London, 1899), ինչպես նաև՝ հայկական (տե՛ս պարականոնի Ա և Բ տարբերակները, *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց,* էջ 1–237: Տե՛ս նաև նույնի անգլերեն՝ **Terian A**., *The Armenian Gospel of the Infancy, with Three Early Versions of the Protevangelium of James*, pp. 1–150 և ֆրանսերեն՝ **Peeters P**., *Evangiles apocryphes*, pp. 69–286, թարգմանությունները) մանկության ավետարանները:

Սուրբ ընտանիքի՝ Եգիպտոսում անցկացրած տարիների մասին, թեև պարականոն ավետարաններից էականորեն տարբերվող, սակայն հարուստ տեղեկություն է հաղորդում նաև Թեոփիլոս Ալեքսանդրացուն (385–412 թթ.) վերագրվող *Տեսիլը*, որը, հեղինակի պնդմամբ, շարադրվել է իրեն հայտնված կույս Մարիամի անմիջական վկայությունների հիման վրա, տե՛ս **Suciu A**., “Me, This Wretched Sinner”: A Coptic Fragment from the Vision of Theophilus Concerning the Flight of the Holy Family to Egypt”, *Vigiliae Christianae* № 67 (2013), pp. 436–450:

[2] Նշենք, որ հայերեն թարգմանության համար աղբյուր հանդիսացած ասորերեն բնագիրն այժմ կորած է համարվում, իսկ մեզ հասած ասորական տարբերակը հայկականից (գուցե նաև նախազաղափարից) բովանդակային առումով շատ է տարբերվում և գրեթե ընդհանրություններ չունի վերջինիս հետ: Հայկական *Մանկութեան աւետարանի* ծագման և զարգացման մասին տե՛ս մեր նախորդ հոդվածում, **Մամյան Մ**., Գիր Տղայութեան աւետարանը, *ԲՄ* № 22, Ե., 2015, էջ 334–349:

կան պարականոնի առանձնահատկությունների շարքում նախևառաջ հարկ է նշել այն, որ ի տարբերություն նույնանման գրվածքների, որտեղ սուրբ ընտանիքը Բեթղեհեմից անմիջապես հետո հայտնվում է Եգիպտոսում,[3] հայ հեղինակները[4] գիտակցել են, որ Եգիպտոս հասնելու համար Հիսուսն իր ծնողների հետ պետք է անցներ սահմանակից մի շարք այլ վայրերով, ուստի, սուրբ ընտանիքի ճանապարհորդության համար նրանք գծել են որոշակի ուղի՝ ամենայն հետևողականությամբ նշելով ոչ միայն դեպի Եգիպտոս, այլ նաև՝ տունդարձի ճանապարհին նրանց անցնելիք քաղաքները.

> «Յարուցեալ Յովսէփ վաղվաղակի՝ առ զմանուկն և զմայր իւր և գնաց փախստական յԱսկաղոն, որ անուանեալ կոչի Յասխալոն… անտի ի Քեբրոն… անտի՝ յԵգիպտոս… եկին հասանել յերկիրն Մովաբու յանդիման Մամբրեի… և հասեալ նոցա յԱրաբացւոց քաղաք մի՝ որ անուանեալ կոչի Մալլա Քպիր Մտին… և եկին յերկիրն Ասորւոց ի քաղաք մի, որ որոյ անունն էր Ծահապրաւ… և գնացեալ յերկիրն Քանանու ի քաղաք մի, որոյ անունն էր Մադիամ… և եկեալ յերկիրն Իսրայէլի ի քաղաք մի, որ կոչի Բոթոստրոն… և եկեալ ի քաղաքն Տապարիա… և գնացեալ նոցա յերկիրն Գալիլեա և ի քաղաք մի՝ որում անունն էր Արիմաթեայ…և ելեալ ի քաղաքէն անտի, երթային յանդիման լերինն Կարմեղայ, որ անուանի Արտեւան… և եկեալ հասեալ նոցա ի գեղ մի, որում անուն էր Եմաւուս… և իւր եկն ի քաղաքն Նազարէթ՝ ի տուն իւր՝ յորում առաջին բնակեալ կային անդ, և կացեալ անդ զամս ութ և տասն. և Յիսուս էր ամաց երկոտասանից, որ և լինի երեսուն ամ»[5]:

Այս ուղեգծում հեղինակները ներառել են նախևառաջ այն վայրերը, որտեղ մանուկ Հիսուսն իրականացրել է իր հրաշագործությունները: Այնուամենայնիվ, պարականոնում երբեմն հանդիպում ենք նաև այնպիսի վայրերի, որտեղ տեղի ունեցած իրադարձությունները որևէ կերպ չեն առնչվում Հիսուսի աստվածային բնության բացահայտմանը, ինչպես օրինակ՝

---

[3] *Կեղծ-Մատթեոսի մանկության ավետարանում* Հիսուսն, ի պատասխան Հովսեփի բողոքի, կրճատում է անցնելիք ուղին, և երեսուն օրվա ճանապարհը նրանք անցնում են մեկ օրում, տե՛ս **Tischendorf C**., *Evangelia Apocrypha*, pp. 90–91.

[4] Մեզ հասած հայկական *Մանկութեան աւետարանը* բազմաշերտ ու բազմաթիվ լրամշակումներ անցած մի գրություն է, ուստի այն մեկ հեղինակի վերագրելը ճիշտ չի լինի:

[5] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 60, 70, 76, 82, 84, 91, 100, 106, 108, 112:

«Գնաց փախստական յԱսկողոն[6] քաղաք մեծ, որ անուանեալ կոչի Յաս-խալոն մերձ առ սահմանօքն յՈվկիանոսի ծովուն. և անտի ի Քեբրոն, և անդ կացեալ նոցա ի ծածուկ ամիսս վեց: Եւ երթայր ինքն ոտիւքն ի վերայ երկրի, և գայր խաղալիս անկանէր ի գիրկս մօրն իւրոյ. և նա խանդաղատելով բարձեալ ի վերայ բազկաց իւրոց, գգուէր և գոհանալով փառաւոր առնէր զԱստուած»[7]:

Ասկաղոնի, Քեբրոնի, ինչպես նաև՝ նմանատիպ այլ՝ ժամանակին հայտնի քաղաքների մեջբերումը պարականոնում հավանաբար արվել է Հիսուսի և նրա ծնողների ճանապարհորդության պատմությունը հնարավորինս ճշմարտանման ներկայացնելու ձգտումով: Այնուհանդերձ, հայ հեղինակներին միշտ չէ, որ հաջողվել է պահպանել այս գրության թվացյալ պատմականությունը, քանի որ նշանավոր քաղաքների կողքին նրանք հաճախ հիշատակել են նաև այնպիսի քաղաքների անուններ, որոնց վավերականությունն այժմ դժվար է հաստատել, ինչպես օրինակ՝ վերոնշյալ «յԱրաբացւոց քաղաք մի, որ անուանեալ կոչի **Մալլա Քպիր Մոհին**, որ թարգմանի Աստուծոյ մեծ քաղաք»[8] և ապա՝ «յերկիրն Ասորւոց ի քաղաք մի, որոյ անունն էր **Ծահապրաւ**»[9], կամ՝ «… և եկեալ յերկիրն Իսրայէլի ի քաղաք մի, որ կոչի **Բոթոսորոն** …»[10] (ընդգծումները մերն են՝ Մ.Մ.), ևն:

Իրենց պատմությունները հյուսելով հիմնականում նորկտակարանային հայտնի դեպքերի հիման վրա՝ պարականոն ավետարանների և հատկապես հայկական *Մանկութեան աւետարանի* հեղինակները ջանացել են ցույց տալ, որ իրենց համար պակաս կարևոր չէ նաև հինկտակարանային ավանդություններին հետևելը:[11] Այսպես՝ հայերեն *Մանկութեան աւետարանում* Հիսուսը և նրա ընտանիքը Քեբրոնից անմիջապես հետո իջևանում

---

[6] Ասկողոնը (Աշկելոն) պաղեստինյան հնագույն քաղաքներից է՝ տեղակայված ծովեզերքին՝ Յաֆա և Գազա քաղաքների միջև: Սուրբ ընտանիքի այցելության ժամանակ Ասկողոնը ուժեղ և ծաղկող քաղաք էր, հելլենական մշակույթի կենտրոն, ուր հատկապես հայտնի էր Աստարովթի (Աթարգատես կամ Դերկետոյա)՝ ձկան մարմնով ու կնոջ դեմքով աստվածուհու պաշտամունքը, տե՛ս **Meinardus O.**, *The Holy Family in Egypt, Cairo* (The American University in Cairo Press), 1986, p. 37:

[7] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 60:

[8] Նույն տեղում, 148:

[9] Նույն տեղում, 76:

[10] Նույն տեղում, 84:

[11] Այս առումով բացառություն է *Թովմայի մանկության ավետարանը*, որն ունի հակահրեական ուղղվածություն:

են «յերկիրն Եգիպտացւոց ի դաշտին Տայանու, և իջեալ անտի ի քաղաք»[12], որտեղ Տայանու դաշտի, ինչպես նաև անանուն քաղաքի հիշատակությունն ակներևաբար արվել է Դավթի Սաղմոսների ազդեցությամբ՝ «Որպէս արար զնշանս եւ զարուեստս իւր յերկրին Եգիպտացւոց եւ ի դաշտին Տայանու» (Սաղմ. Հէ, 43–44)։ Հիշյալ մեջբերման մեջ սաղմոսասացն, իհարկե, հիշում է Եգիպտոսի վրա տեղած տասն պատուհասների մասին, սակայն առանց ենթատեքստի դիտարկելու պարագայում այն կարող է վերաբերել այս երկրում հրաշամանուկ Հիսուսի կատարած սքանչագործություններին։

Հինկտակարանային ավանդության ևս մեկ արտացոլում է նաև *մանկության* գրեթե բոլոր ավետարաններում հանդիպող Եգիպտոսի կուռքերի կործանման մասին պատմությունը[13], որով իրականանում է Եսայու մարգարեությունը. «Ահաւասիկ Տէր նստեալ ի վերայ թեթեւ ամպոյ՝ եկեսցէ յԵգիպտոս, եւ շարժեսցին ձեռագործք Եգիպտացւոց յերեսաց նորա, եւ սիրտք նոցա լցին ի նոսա» (Եսայի ԺԹ, 1)։ Հատկանշական է, որ հայերեն *Մանկութեան աւետարանում* կուռքերի կործանման քաղաքը չի հիշատակվում, փոխարենը պարականոնի հեղինակները հայտնում են, որ այն տեղի է ունեցել Ապոլոնի՝ արևի աստծո տաճարում.

> «…և ամենայն շինուածք տաճարին ի հիմէն անկեալ կործանեցան, և պատկեր կռոցն Ապողոնի և քուրմքն մեհենիցն և քահանայք կռոցն ընկղմեալ անդ ներքոյ շինուածոյն և սատակեցան. և այլ բազմութիւն քաղաքին որ անդ էին՝ փախեան ի տեղւոջէ անտի. և ամենայն կուռք և բագինք դիւացն, որ ի քաղաքին էին՝ անկեալ կործանեցան. և ամենայն շինուածք թըլըսըմներն՝ որ շուրջ զքաղաքաւն անշունչ պատկերք մարդկան, գազանաց և անասնոց՝ անկեալ կործանեցան»[14]։

---

[12] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 60։ Հավանաբար այստեղ նկատի է առնված Եգիպտոսի հնագույն քաղաքներից Տանիսը (այժմ՝ Սան էլ Հագար), որ Եգիպտոսի մայրաքաղաքն է եղել է XXI հարստության օրոք։

[13] Հայերեն պարականոնում յուրաքանչյուր քաղաք, ուր ոտք է դնում մանուկ Հիսուսը, տեղի դևերը շնչավորվում ու հայտարարում են՝ «Գայ մանուկ մի որդի թագաւորի արքայի մեծի»։ Ուշագրավ է, որ դևերի անձնավորման այս երևույթին, որ բացակայում են Հիսուսի մանկության մասին պատմող այլալեզու գրվածքներում, հանդիպում ենք Նիկոդիմոսի ավետարանի մաս կազմող, սակայն հայերենում չպահպանված *Անկումն դժոխոց* հատվածում և դրա ազդեցությամբ գրված միջնադարյան ճառերում։ Այս մասին մանրամասն տե՛ս մեր հոդվածում՝ **Մամյան Մ**., *Նիկոդիմոսի ավետարանը* (Գործք Պիղատոսի) և դրա հայերեն թարգմանության առանձնահատկությունները, *Պատմաբանասիրական հանդես*, Ե., 2016, № 3, էջ 51–56։

[14] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 65։

Վերոնշյալ հատվածն ուղղակիորեն վկայակոչում է նաև Երեմիայի մարգարեությունը՝ «եւ խորտակեսցէ զսիւնս արեգ քաղաքի, որ է յերկրիդ եգիպտացւոյ, եւ զմեհեանս դից նոցա այրեսցէ հրով» (Երեմիա ԽԳ, 11–13): Երեմիայի այս խոսքերը հետագայում որոշ կաթոլիկ հեղինակների առիթ է տվել ենթադրելու, որ մանուկ Հիսուսը հանգրվանել է Հելիոպոլսում[15] (արևի աստծո քաղաք): Այնուամենայնիվ, նույն քրիստոնյա Արևմուտքում մեծ հեղինակություն վայելող *կեղծ-Մատթեոսի ավետարանի* համապատասխան հատվածում (22–3) հիշատակված է Հերմուպոլիս քաղաքը[16]: Ուշագրավ է, որ հայ միջնադարյան (XII–XIV դդ.) որոշ հեղինակներ, ինչպես օրինակ՝ Վանական Վարդապետն իր «Հարցմունք և պատասխանիք»-ում[17], նրա հետևողությամբ Վարդան Արևելցին իր «Ժղլանք»-ում[18], ինչպես նաև՝ Խաչատուր Կեչառեցին իր «Վասն գալստեան Աստուծոյ առ մարդիկ կուսածին թագաւորին Քրիստոսի Աստուծոյ մերոյ»[19] ներբողում *կեղծ-Մատթեոսի ավետարանի* նմանողությամբ սուրբ ընտանիքի հանգրվանության վայր են նշում Եգիպտոսի Հերմուպոլիս քաղաքը: Քիչ հավանական է, որ վերոնշյալ հեղինակներն անծանոթ լինեին արդեն իսկ հայացված *Մանկության ավետարանին*, քանի որ նույն ինքը՝ Վարդան Արևելցին, իր գրվածքներում բազմաթիվ մեջբերումներ է անում այս պարականոնից[20]: Մյուս կողմից, արդեն իսկ ունենալով իրենց սեփական *մանկության* ավետարանը, հայերն անհրաժեշտություն չեն ունեցել թարգմանելու *կեղծ-Մատթեոսի ավետարանը*, թեև այս պարականոնի ինչ-ինչ հատվածներ որոշակի ճանաչում են ունեցել նաև հայկական միջավայրում: Դրանք այստեղ են ներթափանցել հիմնականում կաթոլիկ հեղինակների պատմությունների միջոցով, որոնք, իրենց հերթին, ստեղծվել են պարականոն գրվածքների, այդ թվում նաև՝ *կեղծ-Մատթեոսի*

---

[15] Այս մասին տե՛ս **Saint Alphonsus de Liguori**, *The Incarnation, Birth and Infancy of Jesus Christ, or the Mysteries of the Faith* (p. 500), Montreal, 1886, p. 274:

[16] Տե՛ս **Tischendorf C**. *Evangelia Apocrypha*, p. 90.

[17] «Իսկ Քրիստոս յորժամ յԵգիպտոս փախեաւ, ի Հերմուպօլիս բնակեցաւ», Մաշտոցի անվան Մատենադարանի ձեռագիր թիվ (այսուհետ՝ ՄՄ) 2752, 15բ:

[18] «…զկնի ծեր աւուր ծննդեանն գնաց յԵգիպտոս ի քաղաք Հերմուպաւլիս», ՄՄ 341, 11ա:

[19] «Արդարն և անախտն Յովսէփ առ զՄարիամ և զմանուկն երթայր յաշխարհն յԵգիպտոսի ի քաղաքն Հերմուպօլիս», **Ավդալբեգյան Մ**., *Խաչատուր Կեչառեցի*, XIII–XIV դդ., Ե., 1958, էջ 191:

[20] *Վարդանայ Վարդապետի Աշխարհացոյց*, քնն. հրատ. *Հ. **Պէրպէրեանի,*** Փարիզ, 1960, էջ 41:

հիման վրա։ Այսպես օրինակ՝ ՄՄ 565 ձեռագրում (XVIII դ.) տեղ գտած «Յաղագս, թէ յորժամ Քրիստոս ընդ մօրն իւրում և ընդ Յովսեփայ[21] սրբոյն փախեաւ յԵգիպտոս...» պատմությունը, որ ըստ գրիչ Յոհաննէս Երեւանցու (Քանաքեռցու)՝ «պատմէ Վինչէնցիոս Պէլվաչէնթէ ի գիրն իւր, որ կոչի Հայելի պատմութիւն, ի 7 գլուխն է գրոյն այնորիկ» (83ա), գրեթե բառացի կրկնում է *կեղծ-Մատթեոսի ավետարանի* համապատասխան հատվածի բովանդակությունը։ Կարևոր է նշել սակայն, որ թեև հեղինակն իր պատմությունը շարադրելիս հիմնականում հետևում է *կեղծ-Մատթեոսի ավետարանին* (քարայրից հայտնված գազանների երկրպագությունը մանուկ Հիսուսին (83ա), Աֆրոդիտոս քահանայապետի մասին հիշատակությունը (84ա), և ն), այնուամենայնիվ, սուրբ ընտանիքի հանգրվանության քաղաքին անդրադառնալիս նա շեղվում է այս պարականոնից և հետևելով կաթոլիկ այլ հեղինակներին՝ Հերմուպոլիսի փոխարեն նշում է Հելիոպոլիս քաղաքը.

> «Այժմ տեսցուք, թէ յորժամ ժամանեցին յերկիրն Եգիպտոս, առ յոր քաղաքն իցեն գնացեալք և որոց ի տան իցեն բնակեալք։ Ասեն սուրբն Անսելմոս, սուրբն Թումա, Ուկօն կարտինալն, սուրբն Բօնաւենթուրա և այլք պատմիչք հասարակաբար, թէ ի յերկու քաղաք եղեն բնակեալ երեխայն Յիսուս ընդ մօրն և սրբոյն Յովսէփայ։ Եւ մինն ի քաղաքս այսոցիկ կոչի **Էլիոփօլի** և միւսն Բաբիլոն» (ընդգծումը մերն է՝ Մ.Մ.)[22]։

Առհասարակ, պարականոն գրվածքներին հատուկ է այն, որ գրեթե բոլոր կերպարներն այս կամ այն կերպ առնչություն ունեն նորկտակարանային հայտնի դեպքերին։ Պատահական չէ, որ ըստ հայերեն *Մանկութեան աւետարանի*, սուրբ ընտանիքը Եգիպտոսում հյուրընկալվում է «ի տան իշխանի միոյ, որ էր ազգաւ եբրայեցի, անուն նորա Եղիազար, և ունէր որդի մի և դստերս երկու և անուն որդւոյ Ղազարոս, և աղջկանցն Մարթա և Մարիամ»[23]։ Այս ավանդությանը տեղյակ է նաև սբ. Եպիփան Կիպրացուն վերագրվող ճառերի հեղինակը, ով, անդրադառնալով Եգիպտոսից Հովսեփի ընտանիքի տունդարձի պատմությանը, գրում է.

> «Եւ նա (Յովսէփ – Մ.Մ.) յարուցեալ առ զՄանուկն եւ զՄայր իւր եւ եկն յերկիրն Իսրայէլի՝ բերելով եւս ընդ նոսա զՂազար եւ զմայր նորա եւ զՄարիամ եւ զՄարթա քոյրս նորա, վասն զի հայր նոցա վախճանեալ էր»[24]։

---

[21] Անունն՝ ըստ բնագրի։

[22] ՄՄ 565, 82բ–84բ։

[23] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 69։

[24] **Սուրբ Եպիփան Կիպրացի**, *Ճառք*, աշխ. *Հ. **Քյոսեյանի***, Էջմիածին, 2013, էջ 311։

Կուռքերի կործանման պատմությանը հետևում է հրաշագործությունների երկար շղթան։ Դրանք ի տարբերություն *արաբական* ու *ասորական մանկության* ավետարանների, որտեղ Մարիամն օժտված է սքանչելագործություններ իրականացնելու շնորհով (իհարկե ոչ առանց Հիսուսի խանձարուրների կամ էլ նրան լողացրած ջրի հրաշագործ զորության[25]), հայերեն պարականոնում վերագրվում են բացառապես Հիսուսին. Մարիամի դերակատարությունն այստեղ սահմանափակվում է միայն Հիսուսի ծնողը լինելու իրողությամբ, ով երբեմն նույնիսկ հանդիմանում է որդուն նրա գործած այս կամ այն արարքի համար։ Ընդ որում՝ գրվածքում առանցքային է մանուկ Հիսուսի խորին հարգանքը ոչ միայն մոր՝ Մարիամի, այլ նաև հոր՝ Հովսեփի նկատմամբ։

Նպատակ չունենալով քննելու Հիսուսի կատարած հրաշագործություններն առանձին-առանձին[26], դրանք ներկայացնենք ըստ բովանդակային առանձնահատկությունների.

• Հրաշագործություններ, որոնք դրսևորվում են Հիսուսի առօրյա, մանկական խաղերի մեջ՝ նրան ներկայացնելով ոչ միայն որպես կատարյալ մարդ ու կատարյալ Աստված, այլ նաև՝ որպես կատարյալ **մանուկ.**

> «…եղեւ Յիսուս ամաց երկուց և ամսոց չորից։ Եւ ելեալ Յիսուս երթայր և շրջէր ընդ մանկունսն և ընդ տղայս փոքրագոյնս խաղ արկանել ընդ նոսա և խօսակից լինել. և առեալ հանէր զնոսա ի բարձրաւանդակ տեղիս ի յերդիք կամ ի պատուհան՝ ընդ որ նշոյլք արեգական մտանէր, և ասէր. Ո՞վ ոք ի ձէնջ կարիցէ զիրկս արկանել նշուլից լուսոյն, և իջանել անտի ի վայր՝ և ո՛չ վնասել։ Եւ նոքա ասեն. ոչ ոք ի մէնջ կարիցէ առնել զայդ։ Ասէ Յիսուս. Հայեցարուք ամենեքեանդ և տեսե՛ք. և զիրկս արկեալ Յիսուս շառաւիղից արեգականն

---

[25] Հայկական *Մանկութեան աւետարանում* որևէ տեղ չենք հանդիպում մանուկ Հիսուսին լողացնելու դրվագին, այնինչ հայ միջնադարյան հեղինակները, հավանաբար ծանոթ լինելով նաև Հիսուսի մանկության մասին պատմող արաբական ավանդություններին, իրենց երկերում մեջբերել են նաև այս հատվածը։ Այսպես օրինակ՝ Խաչատուր Կեչառեցու «Վասն զպատեան Աստուծոյ առ մարդիկ կուսածին թագաւորին Քրիստոսի Աստուծոյ մերոյ» ներբողում տեղ գտած մի ավանդազրույցի համաձայն, Եգիպտոսում սուրբ ընտանիքը հյուրընկալվում է մի դպտի կնոջ կողմից, ով ուրախությամբ լողացնում է Հիսուսին և գովեստի երգ ձոնում Մարիամին, տե՛ս ՄՄ 6995, 160ա։ Այս զրույցն իր արտացոլումն է գտել նաև հայ բանահյուսության մեջ, տե՛ս **Ավդալբեգյան Մ**., *Խաչատուր Կեչառեցի*, էջ 84, ծնթ. 1։

[26] Հիսուսի կատարած հրաշագործությունների համառոտ նկարագրությունը տե՛ս **Մառ Ն**., *Անտոպին ողևորտութիւններ դէպ ի Հայս, նկատողութիւններ եւ քաղուածներ հայկական ձեռագրերից*, Վիեննա, (Մխիթարեան տպարան, 90 էջ), 1892, էջ 47–56։

մանրամաղ փոշոյն այնորիկ և գայր հասանէր վերուստ ի վայր, և ոչ վնասէր»[27]:

Մանկական այս չարաճճի արարքներն, այնուամենայնիվ, հայկական պարականոնում մանուկ Հիսուսին չեն հաղորդում այն փոքրիկ չարագործի կերպարը, որ արտահայտված է 2-րդ դարով թվագրվող *Թովմայի մանկության ավետարանում*: Այսպես օրինակ՝ այդտեղ 5 տարեկան Հիսուսը չորացնում է մի երեխայի միայն այն բանի համար, որ նա ոստով ցաքուցրիվ էր արել իր հավաքած ջուրը, իրեն հրած մեկ ուրիշ տղայի անիծում է, և վերջինս տեղնուտեղը մահանում է, իսկ Հիսուսի ծնողներին բողոքելու եկած երեխայի ծնողները կուրացվում են: *Թովմայի ավետարանում* արտահայտված Հիսուսի այս դաժան կերպարի երևույթը մեծ հետաքրքրություն է առաջ բերել գիտական շրջանակներում և դարձել վերջերս լույս տեսած մի շարք ուսումնասիրությունների հիմնական թեման[28]: Դաժանության այս դրսևորումները հավանաբար հակաքրիստոնեական անձանց կողմից ստեղծված պատմություններ համարելով՝ հայ հեղինակները դրանք դուրս են թողել հայերեն պարականոնից: Ընդհակառակը, հայկական *Մանկութեան աւետարանում* մանուկ Հիսուսը հանդես է գալիս որպես բարության մարմնավորում[29], ում բարյացակամ վերաբերմունքն իր հասակակիցների հանդեպ հաճախ գործում է նույնիսկ ի վնաս իրեն.

---

[27] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 61:

[28] Տե՛ս օրինակ՝ **Whitenton M. R.**, “The Moral Character Development of the Boy Jesus in the Infancy Gospel of Thomas”, *Journal of the Study of the New Testament*, vol. 38 (2), 2015, pp. 219–240; **Eastman D.**, “Cursing in the Infancy Gospel of Thomas”, *Vigiliae Christianae*, vol. 69 (2), pp. 186–208; **Upson-Sala K.**, “Holy Child or Holy Terror? Understanding Jesus' Anger in the Infancy Gospel of Thomas”, *Church History*, 82:1 (March 2013), pp. 1–39; **Aasgaard R.**, “From Boy to Man in Antiquity: Jesus in the Apocryphal Infancy Gospel of Thomas”, THYMOS: *Journal of Boyhood Studies*, vol. 3 (1), 2009, pp. 3–20; **Dzon M.**, *The Image of the Wanton Christ-Child in the Apocryphal Infancy Legends of Late Medieval England,* Toronto, 2004; ևն:

[29] Բավական հետաքրքրական են քրիստոնեության և *Սասնա Ծռեր* էպոսի միջև առկա ընդհանրությունները՝ սկսած Մարիամի ու Ծովինարի հրաշալի հղիությունից՝ մի դեպքում Սուրբ Հոգուց, և մյուս դեպքում՝ ջրից, և վերջացրած փախճանաբանության մասին պատկերացումներով, որոնք արտահայտվում են մի դեպքում՝ Քրիստոսի երկրորդ գալստյամբ և մյուս դեպքում՝ Փոքր Մհերի քարանձավից դուրս գալով: Հայ ժողովրդի համար կարևորագույն նշանակություն ունեցող երկու երևույթների՝ կրոնի ու ազգային էպոսի նմանությունները դրսևորվում են նաև մանուկ Հիսուսի՝ հասակակիցների նկատմամբ անսահման բարությամբ լցված երեխայական խաղերի և տղայահասակ Սասունցի Դավթի սխրագործությունների միջև, որ, ի տարբերություն այ-

«Եւ նա սիրով և քաղցրութեամբ կոչէր զամենեսեան ի հաւանութիւն…Եւ նա ոչ տայր ումէք զմիմեանս հարկանել: Եւ եթէ ոք ի մանկանցն և ի տղայոցն զմիմեանս վիրաւորէին և գանալից առնէին, սակայն նա ձեռն դնէր և բժշկէր զհարեալն: Եւ որչափ եւս սիրով կոչէր զամենեսեան, և զտրտմեալսն և զխռովեալսն հաշտեցուցանէր, և ուրախ առնէր, բայց սակայն զինչ վիճոյ պատճառ լինէր ի միջի խրեանց՝ դնէին ի վերայ Յիսուսի»[30]:

Հետաքրքրական է, որ հայկական պարականոնում իմաստային փոփոխության է ենթարկվել նաև Հիսուսի կատարած թերևս ամենից հայտնի՝ կավից թռչուններ պատրաստելու ու նրանց կենդանություն տալու հրաշագործությունը[31]: Այս դրվագը, որ բավական հին արմատներ ունի և սկիզբ է առնում *Թովմայի մանկության ավետարանից* (2:3)՝ փոխանցվելով համանման մյուս պարականոններին և անգամ իր արտացոլումը գտնելով Ղուրանում (V, 110)[32], հայկական տարբերակում ներկայացված է բոլորովին այլ կերպ: Հայերեն *Մանկութեան աւետարանի* հեղինակները, թեև ծանոթ են այս պատմությանը, այնուամենայնիվ, նրանք չեն հիշատակում ոչ շաբաթ օրվա օրենքը խախտող Հիսուսին, ո՛չ Հիսուսի օրինազանցության դեմ Հովսեփին բողոքած հրեա տղային, և ո՛չ էլ Հիսուսի արձագանքին, ով, ի պատասխան իոր հանդիմանանքի՝ ծափ զարկելով՝ օդ է թռցնում իր պատրաստած թռչուններին[33]: Փոխարենը, հայ հեղինակներն այս դրվագը դասում են Հի-

---

լալեզու էպոսներում հանդես եկող գլխավոր հերոսների նվաճողական ձգտումների, ուղղված է բացառապես հայրենի երկրի պաշտպանությանն ու բարօրությանը:

[30] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ151:

[31] **Kattan Gribetz S.**, “Jesus and the Clay Birds: Reading Toledot Yeshu in Light of the Infancy Gospels”, *Envisioning Judaism*: *Studies in Honor of Peter Schäfer*, ed. ***Boustan R.***, ***Hermann K.***, ***Leicht R.***, ***Reed A.***, and ***Veltri G.***, with ***Ramos A.***; Tübingen, Mohr Siebeck, 2013, № 1, 1021–1048.

[32] **Robinson N.**, “Creating Birds from Clay: A Miracle of Jesus in the Qur'an and in Classical Muslim Exegesis”, *The Muslim World*, № 79, 1989, pp. 1–13.

[33] Ուշագրավ է, որ հայ մատենագրության մեջ այս դրվագն արտացոլվել է իր նախնական տեսքով՝ հիմք հանդիսանալով Գրիգոր Նարեկացու վարքագրական մի շարք պատմությունների ստեղծման համար, տե՛ս **Տեր-Դավթյան Ք.**, «Հիսուսի Տղայության ավետարանների արտացոլքը հայ միջնադարյան գրականության մեջ», *Հայաստանը և քրիստոնյա Արևելքը*, Ե., 2000, էջ 336: Այս մեծարժեք հոդվածի հարգարժան հեղինակը հայկական *Մանկութեան աւետարանը* նույնացնում է *Հակոբոսի նախաավետարանին*, թեև դրանք տարբեր ստեղծագործություններ են, տե՛ս **Մամյան Մ.**, «Մանկութեան աւետարան»-ի և *Հակոբոսի նախաավետարանի* հայերեն թարգմանությունները (համեմատական քննություն)», *ԲՄ* № 23, 2016, էջ 334–349:

սուսի կատարած ոչ նպատակային հրաշագործությունների թվին՝ այն վերագրելով միմիայն նրա մանկական նկրտումներին.

«Ասէ Յիսուս (ցմանկունսն). Ո՞ ոք ի ձէնջ կարիցէ առնել խաղ ինչ: Ասեն մանկունքն. Մեք ինչ ո՚չ գիտեմք առնել ինչ՝ բայց միայն զի տեսցուք: Ասէ Յիսուս. Հայեցարուք ամենեքեան և տեսէք… Եւ առեալ Յիսուս զկաւն ի ձեռին իւրում ճնճղուկ առնէր և փչեալ թռուցանէր ընդ երկինս…և տղայքն ի վեր նայեցեալ ընդ օդս, զի թռուցեալ երթային ձայն արձակելով. և նոցա զայն տեսեալ ամենեցուն հիացեալ զարմանային ընդ գործն Յիսուսի»[34]:

• Հրաշագործությունների հաջորդ խումբը կարելի է համարել նորկտակարանային հրաշքների նախօրինակները, որոնք արտահայտում են մանուկ Հիսուսի աստվածային բարեգութ էությունը: Աղբյուրի բխեցումը ժայռից, ջրում հայտնված ձկների խորովվումը առանց կրակի այրվող փայտերով և դրանցով քաղցած երեխաների հագեցումը (հմմ. Հովհ. Զ, 1–14, Մարկ. Զ, 30–45; Ը, 1–9; Մատթ. ԺԴ, 13–22; ԺԵ, 32–39; Ղուկ. Թ, 10–17), բժշկումների շարքը, ինչպես օրինակ՝ կուրացած տղայի բժշկումը Մովաբի երկրում, երկու անդամալույծների բժշկումը «յարտեւան[35] լերինն» և Եմավուսում, տարեց ասորու բժշկումը «ի զիւղ մի, որում անուն էր Բուքորոն», ևս մեկ անդամալույծի բժշկումը Նազարեթում[36] (հմմ. Մատթ. Ը, 1–22; 28–33, Թ, 1–8; 27–38; ԺԲ, 9–13; Մարկ Ա, 40–45, Գ, 1–6; Ե, 1–20; Ղուկ. Ե, 12–26; Զ, 6–11; Ը, 26–39), երկու զինվորների ու ժառանգության համար վիճող որդիների հաշտեցումը (հմմ. Ղուկ. ԺԲ, 13–22), ծովի վրայով քայլելը (Մատթ. ԺԴ, 22–26; Մարկ. Զ, 45; Հովհ. Զ, 15–21), ինչպես նաև՝ նմանա-

---

[34] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 82–83:

[35] Այստեղ *արտեւան* բառը գործածված է *լեռան գագաթ* իմաստով (հմմ. Ղուկ. Դ, 29), տե՛ս **Աճառյան Հ.**, *Հայերեն արմատական բառարան*, Ե., 1971, էջ 343, Սակայն Ե. Տայեցու հրատարակած պարականոնի Բ տարբերակում այն կիրառված է հատուկ անվանումով՝ «լերինն Կարմեղայ, որ անուանի *Արտեւան*», տե՛ս *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 226:

[36] Ուշագրավ են այս պատմության և միջնադարյան մեկ այլ անկանոն երկի՝ *Պատմութիւն անդամալուծին* միջև եղած ընդհանրությունները, որտեղ, սակայն, իրադարձությունները զարգանում են Հարությունից հետո, և մանուկ Հիսուսի փոխարեն անդամալույծին բուժում է հարուցյալ Հիսուսը: Տե՛ս **Степанян Л.**, «Страница из истории средневековой армянской апокрифической литературы» («История расслабленного»), *Նյութեր Մատենադարանի հիմնադիր տնօրենի ծննդյան 90-ամյակին նվիրված միջազգային գիտաժողովի (9–11 հոկտեմբերի, 2008 թ.)*, Ե., 2010, էջ 359–385: Տես նաև՝ **Outtier B.**, « Paralytique et Ressuscité (Cant 85 et 62). Vie des Apocryphes en Arménien », *Apocrypha* №8, 1997, pp. 111–119.

տիպ այլ հրաշքների առկայությունը պարականոնում նախանշում է Նոր Կտակարանում կատարվելիք որոշ իրադարձությունների ընթացքը:

• Այնպես, ինչպես Նոր Կտակարանում, հայերեն *Մանկութեան աւետարանում* ևս իրենց կարևորագույն տեղն ունեն մահացածների հարության հրաշքները, որոնք, սակայն, ի տարբերություն իրենց նորկտակարանային արտահայտչաձևերի (Մատթ. Թ, 18–23; Մարկ. Ե, 21–43, Ղուկ. Ը, 40–56; Հովհ. ԺԱ, 1–24)՝ պարականոնում, թվում է, ի կատար են ածվում անհրաժեշտաբար՝ ձեռք բերելով պաշտպանական գործառույթ:

Տանիքից պատահաբար վայր ընկած և մահացած տղայի պատմությունը հանդիպում է գրեթե բոլոր *մանկության* ավետարաններում, և համանման գրությունների նմանողությամբ, հայկական պարականոնում ևս այս պատահարին ներկա գտնվող երեխաները տղայի մահվան մեջ մեղադրում են Հիսուսին՝ որպես «մանուկ մի օտարական… որդի այևորի միոյ»: Այս դեպքին հաջորդում է Հիսուսի դատավարությունը, որի ընթացքում, զրկված լինելով իր անմեղությունն ապացուցելու որևէ հնարավորությունից, Հիսուսն ստիպված է լինում հարություն տալ մահացած երեխային՝

> «Արարիաս, որդի Թամարայ, բաց զաչս քո և տե՛ս և պատմեա մեզ եթէ ո եղեւ պատճառ կորստեան քո: Եւ նոյն ժամայն յարեաւ մեռեալն իբրեւ ի քնոյ զարթուցեալ… Ասէ Յիսուս ցմանուկն. Ո՛ մանուկ, ասա, ո՛ եղեւ պատճառ կորստեան քո: Ասէ մանուկն. Տէր, ոչ ես դու արեան իմոյ պարտական… այլ ես ի քուն եղեալ էի՝ անկայ վերուստ ի վայր և մեռայ»[37]:

Բացի այն, որ հայերեն *Մանկութեան աւետարան*-ում նմանատիպ դեպքերը բազմիցս կրկնվում են ոչ միայն պանդխտության տարիներին, այլ նաև հայրենի երկրում[38], և սեփական անմեղությունն ապացուցելու համար Հիսուսն ստիպված է լինում հարություն տալ այլ երեխաների ևս, պարականոնն աչքի է ընկնում նաև դատավարությունների ընթացքի մանրամասն

---

[37] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 226: Թերևս միայն հայկական պարականոնին է հատուկ այն իրողությունը, որ երեխաներին հարություն տալուց որոշ ժամանակ անց հարուցյալները նորից Հիսուսի հրամանով ննջում են. «Ապա յետ անցանելոյ երից ժամուց, կայր կենդանի մարմնով մանուկն, նստէր և խօսէր ընդ ամենեսեան: Իսկ Յիսուս դարձեալ ասէ ցպատանեակն Արաբեայ. Ննջէ այսուհետեւ, և հանգիր՝ մինչեւ զայցէ հասարակաց յարութիւն: Եւ զայս ասացեալ Յիսուսի, անդէն վաղվաղակի եդ պատանեակն զգլուխն ի մահիճս իւր՝ ննջեաց»:

[38] Այսպես օրինակ՝ Ասորիքում Հիսուսը հարություն է տալիս անապատում ծարավից ու սովից մահացած տղային, Քանանում կենդանացնում է քարկոծված տղային և թագավորի սպանված որդուն (Բ), Արիմաթայում կենդանացնում է ջրհորն ընկած տղային:

նկարագրությամբ, որտեղ շեշտված են առանց վկաների Հիսուսի ինքնապաշտպանության ջանքերը: Դատավարության այս մանրազնին նկարագրությունները, ըստ Ի. Դորֆման-Լազարևի, ամենայն հավանականությամբ, հետագայի խմբագրությունների հետևանք են, որ գրվածքում տեղ են գտել հայերի՝ մահմեդական իշխանությունների տիրապետության տակ ընկնելուց հետո: Ըստ գիտնականի՝ նմանատիպ դատավարությունների ընթացքը, որտեղ իր դերակատարությունն ունի նաև Հիսուսի արարքների պատճառով պատասխանատվության կանչված Հովսեփը, արտացոլում է մահմեդականների տիրապետության պայմաններում ոչ մահմեդականների ծանր դրությունը, որոնք զրկված էին վկաներ ունենալու հնարավորությունից[39]:

• Եվ վերջապես՝ հայկական *Մանկության ավետարանում* առանձնանում են Հիսուսի այն հրաշագործությունները, որոնք ունեն գաղափարական նշանակություն, և որոնց շնորհիվ որոշ չափով հնարավոր է դառնում վերհանել պարականոնի դավանաբանական շերտերը: Դրանց շարքում ուշադրություն են գրավում հատկապես երկուսը՝ *Հիսուսը ներկարարի աշակերտ* և *Հիսուսը դպրոցում* պատմությունները[40], որոնք իրենց պատկերագրական արտացոլումն են գտել ՄՄ 7634 և 10805 ձեռագրերում[41]:

*Հիսուսը դպրոցում* պատմությունը, որ հյուսվում է տառերը մեկնելու Հիսուսի յուրահատուկ կարողության շուրջ, թերևս այն հազվադեպ դրվագնե-

---

[39] Նման եզրակացության հեղինակը հանգում է՝ զուգահեռներ անցկացնելով Հայոց նոր վկաների և մանուկ Հիսուսի դատավարությունների միջև, տե՛ս **Dorfmann-Lazarev I**., «La transmission de l'apocryphe de l'Enfance de Jésus in Arménie», *Jesus in apokryphen Evangelienüberlieferungenn: Beiträge zu ausserkanonischen Jesusüberlieferungen aus verschiedenen Sprach- und Kulturtraditionen,* eds. ***Frey, J. and Schröter, J.,*** Tübingen: Mohr Siebeck, (Wissenschaftliche Untersuchungen zum Neuen Testament; 254), pp. 577–578:

[40] Հայերեն ձեռագրերում այս դրվագներն ունեն այլ խորագրեր, մասնավորապես՝ «Վասն տալոյ զՅիսուս Գամաղիէլի յուսումն գրոց» և «Վասն տալոյ զՅիսուս յարուեստ ներկարարութեան», իսկ «Հիսուսը դպրոցում» և «Հիսուս ներկարարի աշակերտ» պայմանական խորագրերը գործածել ենք դրանց հակիրճությունը պահպանելու նպատակով:

[41] Վերոնշյալ ձեռագրերում տեղ գտած մանրանկարները (նկ. 1, 2, 3) պատկանում են մանուկ Հիսուսի կյանքը պատկերող բացառիկ նմուշներին: Այս ձեռագրերի ծաղկողն է Առաքել Գեղամեցին (XVI–XVII դդ.), որ հիշատակվում է նաև որպես գրիչ, տե՛ս **Գէորգեան Ա**., *Հայ մանրանկարիչներ, մատենագիտութիւն, IX–XIX դդ*. Գահիրէ, 1998, էջ 48–49:

րից է, որ, սկիզբ առնելով *Թովմայի մանկության ավետարանից*[42], այս կամ այն կերպ իր արտահայտությունն է գտել *մանկության* բոլոր, այդ թվում նաև՝ հայկական *Մանկութեան աւետարանում*: Ըստ որում, այս ավանդությունը փոխակերպվել և բավական հետաքրքիր նրբերանգներ է ստացել հայկական պարականոնում: Յոթնամյա (երբեմն էլ՝ հնգամյա)[43] Հիսուսի վարդապետի դերում այստեղ հանդես է գալիս Գամաղիել[44] անվանումով ոմն եբրայեցի (հմմ. Գործք Ե:34, 22:3): Հետևելով համանման ավետարանների ավանդույթին, հայկական պարականոնում նույնպես Հիսուսն իր ուսուցչից պահանջում է բացատրել տառերի խորհրդաբանական իմաստը, սակայն աշակերտի այս պահանջը վերջինիս համար անիրականանալի է, քանի որ, ըստ նրա, տառերը նախատեսված են միայն բառերը գրելու և ընթերցելու համար: Ի պատասխան վարդապետի այս արձագանքին, Հիսուսն ինքն է ստանձնում տառերի մեկնությունը, որ, ըստ որոշ ուսումնասիրողների, արտացոլում է դրանց և՛ երրորդաբանական, և՛ քրիստոսաբանական նշանակությունը[45]. «Գիրն անուն Աստուած թարգմանի, և Բանն Աստուած ծնունդ առնու և մարմնանայ. Բանն Աստուած գրոյն, և ի Բանէն Հոգին սուրբ, որ է Երրորդութիւն»[46]: Հիսուսի այս վերերկրային իմացությունը, սակայն, նրան չի խանգարում խորին հարգանք տածել Գամաղիելի նկատմամբ, մի երևույթ, որն իր հակառակ դրսևորումն ունի համանման, և հատկապես՝ *Թովմայի մանկության ավետարանում*, որտեղ ուսուցիչները նույնիսկ պատժվում են իրենց չիմացության պատճառով:

Ոչ միայն տառերի խորհրդաբանական նշանակության, այլ նաև դրանց կազմության այլգորիկ մեկնաբանության հետաքրքիր օրինակ է *Մանկութեան աւետարանի* համառոտ տարբերակներից մեկի՝ ՄՄ 6980-ի համապա-

---

[42] Տե՛ս **Paulissen L.,** « Jésus à l' école. L'enseignement dans l'Évangile de l'Enfance selon Thomas », *Apocrypha* 14, 2003, pp. 153–176.

[43] Հիսուսի տարիքի հստակ նշումը ցանկացած իրադարձության նկարագրության ժամանակ առանձցքային է հայկական պարականոնի հեղինակների համար:

[44] *Մանկության* համանման ավետարաններում Հիսուսին ուսման են տալիս երեք տարբեր ուսուցիչների մոտ (արաբականում՝ երկու), որոնցից միայն մեկի անունն է հայտնի՝ Զակքեոս:

[45] **Horn C**., "Jesus at School among Christians, Jews and Muslims", *Forbidden Texts on the Western Frontier, The Christian Apocrypha in North American Perspectives*, ed. by ***T. Burke***, Toronto, 2013, p. 117.

[46] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 87:

տասխան հատվածը: Քանի որ այն տեղ չի գտել ոչ Ե. Տայեցու[47], և ոչ էլ Ա. Տերյանի[48] հրատարակած գրքերում, հարկ ենք համարում հատվածն ամբողջությամբ մեջբերել այստեղ.

«Իբրև եղև Յիսուս Ե ամաց, առեալ Մարիամ զմանուկն և ետ ի Գամաղիէլ քահանայն և ասէ. Կարդացոյ զմանուկս: Եւ գրեաց նմա Է գիր՝ ա, բ, գ, դ, ե, զ, է: Եւ ասէ Գամաղիէլ. Որդեակ կարդա՛յ (56ա) ասա՛ այբ ա, բեն բ, գիմ գ, դայ դ, եչ ե, զայ զ, է է: Կարդաց Յիսուս և ասէ. Վարդապետ, ասա՛ ինձ զմեկնութիւն գրերոյս: Ասէ Գամաղիէլ, դու կարդայ, ինչ փոյթ է քեզ մեկնութիւն գրոցն, դեռ ըսկի չես կարդացել, զմեկնութիւն խնդրես: Ասէ Յիսուս, եթէ ոչ մեկնես ինձ զգիրս, ոչ կարդամ: Ասէ Գամաղիէլ. Զինչ մեկնութիւն: Ասէ Յիսուս. Ապա այբն ընդէր է Գ ճիւղի կամ գիմի գլուխն կլոր կամ դան երեսն դէմ, և այլքն նոյնպէս: Ասէ. Որդի՛, մեք չեմք լուեալ մեր (56բ) վարդապետէն: Ասէ Յիսուս, թէ այլն ոչ կարես ասել, ասա ինձ, թէ այբն ընդէր է Գ ճիւղի կամ է ընդէր է անփակ: Եւ վարդապետն ասէ. Մեք չեմք լսել այդ ի վարդապետէ: Ասէ Յիսուս. Ապա ոչ գիտես, որ այբն Գ ճղի անուն Աստուծոյ է. երեք և միավորեալ և Է անփակ աստուածութեան է օրինակ, որ մի անհայր կամ անմայր Աստուած յաւիտեանս յաւիտենից: Եւ դու զայս ոչ գիտես, զամ ինչ ուսանիմ ի քէն: Իսկ զարմացաւ Գամաղիէլ, կոչեաց զՅովսէփ և զՄարիամ և ասէ ցնոսա. Քանզի մանուկն ձեր յոյժ իմաստուն է, շնորհք նորա աստուածատուր է (57ա), ես նորա նոր տախտակ գրեցի, նա բանս վարդապետական հարցանէ, որ ո՛չ ոք կարէ տալ պատասխանի: Ասէ: Պատրաստ պահեցէք զմանուկն ձեր, զի խիստ ճարտար է և իմաստուն և իշխանք մեր շատ են և դուք դարիպ, չլինի թէ խլեն ի ձեռաց ձերոց: Ո՛չ կամիմ ուսանել զնա, առէք այլ ուրիշ տեղ փոխեցէք (57բ)»[49]:

Ինչպես նշվեց, տառերի մեկնության այս յուրօրինակ պատմությունը, որի մասին դեռևս II դ. հիշատակում է Իրինեոս Լուգդունացին իր *Ընդդեմ հերձուածողաց* երկում[50], կարևորվում է պարականոնի դավանաբանական

[47] Նույն տեղում, էջ 86–90, 179–187:

[48] **Terian A.**, *The Armenian Gospel of the Infancy, with Three Early Versions of the Protevangelium of James*, pp. 92–99.

[49] Ժ. Ճարդենը Պարսկաստան կատարած իր ճանապարհորդությունը նկարագրելիս տեղի քրիստոնյաների շրջանում տարածված աստվածաշնչյան ավանդությունների շարքում նշում է նաև հայկական *Մանկության ավետարանը*, որից մեջբերված հատվածը հիշեցնում է ՄՄ 6980 ձեռագրի բովանդակությունը, տե՛ս **Jones J.**, *A New and Full Method of Settling the Canonical Authority of the New Testament*, vol. 2, 1798, Oxford, p. 232:

[50] Ըստ հեղինակի վկայության՝ այս ավանդությունը մեծ տարածում է ունեցել մարկիոնականների շրջանում, տե՛ս **Saint Irenaeus of Lyons**, *Against Heresis, 1.20, Ante-Nicene Fathers*, vol. 1, ed. by. ***Ph. Schaff***, Michigan, 1950, p. 345.

շերտերը պարզաբանելու տեսանկյունից ևս: Անճանաչելին ճանաչելու Հիսուսի այս կարողությունը, որ, ըստ էության, գնոստիկյան ուսմունքի կարևորագույն դրույթներից է, առիթ է տվել որոշ ուսումնասիրողների ենթադրելու, որ *Թովմայի մանկության ավետարանը*, որ այս ավանդության հնագույն կրողն է, պատկանում է գնոստիկ հեղինակների գրչին: Այս տեսության հաստատումը կամ ժխտումը դուրս է մեր ուսումնասիրության շրջանակներից[51], այնուամենայնիվ, վերոնշյալ պատմության միջոցով գնոստիկյան որոշ տարրեր ներթափանցել են նաև հայկական *Մանկութեան աւետարան*:

Գնոստիկությանը հատուկ ևս մեկ ուղղության՝ երևութականության ազդեցությունը հայկական *Մանկութեան աւետարանի* վրա իր արտացոլումն է գտել *Հիսուսը ներկարարի աշակերտ* դրվագում: Պատումը հյուսվում է մանուկ Հիսուսի անհնազանդ արարքի և հրաշագործության շուրջ, երբ, դպրություն ուսուցանելու անհաջող փորձից հետո, ծնողները նրան ներկարարության են տալիս ոմն Իսրայելի արվեստանոցում՝ «ի քաղաքն Տապարիա»[52]: Ինքնամյա Հիսուսին հանձնարարելով իր արվեստանոցի գործերը, վարպետն առժամանակ հեռանում է քաղաքից, իսկ Հիսուսը, ցանկանալով հնարավորինս արագ վերջացնել գործերը և միանալ խաղացող երեխաներին, բոլոր ներկերը խառնում է իրար.

> «Եւ Յիսուս յարուցեալ եկաց, բացեալ զդուռն տանն՝ և առեալ զամենայն ներկս քաղաքին և լից ի կարաս մի կապուտ ներկի, և եփեալ զկարասն և փակեաց զդուռն տանն, և ելեալ գնաց ըստ սովորութեան խլրում ի տեղի, որ խաղ առնէին տղայքն»[53]:

Հիսուսի այս արարքը զայրացնում է վարպետին, ով փորձում է պատժել նրան, սակայն փոքր-ինչ անց տեղի է տալիս՝ ընդունելով Հիսուսի գերբնական էությունը: Վարպետի այս կտրուկ մտափոփոխության համար առիթ են հանդիսանում նախ այն, որ Հիսուսը, ի զարմանս իրեն, կարասից

---

[51] *Թովմայի մանկության ավետարանի* ծագման քննության մասին տե՛ս **Burke T.**, *The Infancy Gospel of Thomas: The Text, Its Origins, and Its Transmission,* Toronto, 2001:

[52] Կամ՝ *Տապարի:* Սա հավանաբար աստվածաշնչյան հայտնի Տիբերիա քաղաքն է, որ այս պարականոնում տեղ է գտել արաբական հնչողության նմանողությամբ՝ طبرية-*Tabariyyah:*

[53] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 93:

անխաթար հատ-հատ հանում է բոլոր գույները, և ապա այն, որ իր՝ Հիսուսի հետևից զցած կոփիչն հրաշալի կերպով կանաչում է[54]:

Պատմության այսպիսի հանգուցալուծումը, կարծես թե կրկնում է պարականոնի դեպքերի հիմնական ընթացքը՝ Հիսուսը մեղադրվում է, սակայն կարճ ժամանակ անց նրան մեղադրողներն իսկ ճանաչում են նրա անմեղությունն ու աստվածային էությունը: Այնուամենայնիվ, այս պատումի մեջ, որն արտացոլում է Աստծո՝ որպես արարիչ-ներկարարի մասին պատկերացումները, կարևոր տեղ է զբաղեցնում մի դրվագ, որը հատուկ է միայն հայկական պարականոնին. խոսքը Հիսուսի բազմաթիվ կերպարանափոխությունների մասին է, որոնց միջոցով նրան առժամանակ հաջողվում է խույս տալ իր վարպետի հետապնդումներից.

> «Ելեալ Յիսուս ի ծովէն՝ նստէր ի ծովափին ի վերայ վիմի միոյ՝ ի նմանութիւն **տղայի**. Քաղաքացիքն հարցանէին զնա և ասէին. Մանուկ, դու ո՞չ ես տեսեալ զորդին Յովսէփայ: Ասէ Յիսուս. Ո՛չ գիտեմ: Ապա լինէր ի կերպս **երիտասարդի**. Հարցանէին զնա. Դու ո՞չ ես տեսեալ զորդին Յովսէփայ: Ասէ Յիսուս. Ո՛չ: Դարձեալ լինէր ի նմանութիւն **ծերոյ**: Հարցանէին զնա. Ծե՛ր դու, տեսեա՞լ ես զորդի ծերոյ Յովսէփայ: Ասէ Յիսուս. Ո՛չ եմ տեսեալ»[55]:

Ի. Դորֆման-Լազարևը, որ իր չափազանց հետաքրքրական ու արժեքավոր հոդվածում[56] անդրադարձել է *Հիսուսը ներկարարի աշակերտ* պատմությանը՝ մանրազնին ու համակողմանիորեն ուսումնասիրելով և համեմատելով այն այլալեզու ավանդությունների հետ, եկել է այն համոզման, որ Հիսուսի վերոնշյալ կերպարանափոխություններում[57] արտահայտված է

[54] Այս ավանդազրույցի արտացոլումը հայ վարքագրության մեջ տե՛ս **Տեր-Դավթյան Ք.**, Գրիգոր Նարեկացու զրուցապատում վարքի աղբյուրներից, *Էջմիածին*, № 12, 2003, էջ 38–39:

[55] *Անկանոն գիրք Նոր Կտակարանաց*, էջ 97:

[56] **Dorfmann-Lazarev I.**, “Changing Colours and Forms, Theophanies in the Armenian *Script of the Lord's Infancy*”, *Journal of Eastern Christian Studies* 68(3–4), 2016, pp. 349–381.

[57] Հիսուսի կերպարանափոխությունների երևույթը, որ, ինչպես երևում է, հոգեհարազատ է եղել հայերին, տեղ է գտել նաև Հիսուսի անձեռագործ դաստառակի մասին պատմող ավանդության մեջ: Ըստ այս պատմության՝ Աբգարը, Հիսուսի պատկերը ստանալու համար, նրա մոտ է ուղարկում իր նկարչին, սակայն վերջինիս՝ Հիսուսին նկարելու բոլոր ջանքերն ապարդյուն են անցնում՝ նրա բազմաթիվ կերպարանափոխությունների պատճառով. «Այնժամ պատկերահանն սկսաւ նկարել զպատկերն Յիսուսի, իբրև նկարեաց կրկին հայեցեալ ետես ըստ առաջնոյն չէր նման, սկսաւ նոր զրել և դարձեալ հայեցաւ զի չէր նման այլ կերպս փոխեցաւ: Պատկերահանն զարհուրեալ ապշած մնաց և եթող զնկարելն: Ասէ Յիսուս. Ընդէր հիացեալ ապշեցար. Ասէ պատկերահանն. Տէր, կամեցայ զամէնօրհնեալ պատկերն քո նկարել և ոչ կարացի… Յայնժամ

երևութականության ուսմունքը: Այս վարդապետությունը, որ հայերի համար ընդունելի է եղել այնքանով, որքանով որ դա հաստատում էր դեռևս VI դ. կեսերին Հայ եկեղեցու ընդունած Քրիստոսի մարմնի «անապականության» մասին ուսմունքը[58], ըստ նրա, հայերին հասանելի է եղել ոչ քաղկեդոնական ասորիների կողմից Հայաստան բերված պարականոն գրվածքների և հնագույն երևութական աղբյուրների միջոցով[59]:

Այսպիսով՝ նշենք, որ թեև հայերեն *Մանկության ավետարանը* պատկանում է հայ թարգմանական երկերի շարքին, այնուամենայնիվ, այս պարականոնի մաս կազմող *փախուստը Եգիպտոս* հատվածն ամենայն հավանականությամբ պատկանում է հայ հեղինակների գրչին: Վերջիններս, ծանոթ լինելով այլալեզու *մանկության* ավետարաններին և երբեմն նույնիսկ օգտվելով դրանցից, այնուհանդերձ, սուրբ ընտանիքի ճանապարհորդությունը ներկայացրել են յուրովի: Այս յուրահատկությունը նախևառաջ արտահայտվում է հրաշամանուկ Հիսուսի արարքներում, ում կերպարը հայ հեղինակները կերտել են ըստ իրենց սեփական պատկերացումների՝ այս նորաստեղծ պատկերից դուրս թողնելով այն դաժանությունը, որ հատուկ է համանման գրությունների Հիսուսին: Փոխարենը նրանք մանկանը օժտել են այնպիսի հատկանիշներով, որոնք բնորոշ են միայն Աստծո բարեգութ որդուն: Ընդ որում՝ բոլորովին չընկրկելով այն իրողությունից, որ իրենք գործ ունեն պարականոն գրության հետ, հայ հեղինակները մանուկ Հիսու-

Յիսուս առեալ զդաստառակն էարկ օրհնեալ երեսովն, և սուրբ պատկերն առ ժամայն նկարեալ եղև ի վերայ դաստառակին», տե՛ս ՄՄ 6980, 74բ–75ա: Տե՛ս նաև **Марр Н.**, *«Хитон Господен», Тексты и разыскания по армяно-грузинской филологии, т. I, СПб., 1900, 82–93, ինչպես նաև՝* **Outtier B**., “Une forme enrichie de la Légende d’Abgar en arménien”, *Apocryphes arméniens* : *transmission*, traduction, création, iconographie. Actes du colloque international sur la littérature *apocryphe* en langue *arménienne* (Genève, 18–20 septembre 1997, publications de l’Institut Romand des Sciences Bibliques1), Lausanne: Zèbre, éditeur et auteur; avec B. Outtier & J.-D. Kaestli, 1999, p. 138.

[58] VI դ. զարգացնելով Հիսուսի մարմնի անապականության մասին ուսմունքը՝ հետագայում հուլիանականները Հիսուսի մարդկային բնությունը հասցրել են նվազագույնի՝ հարելով երևութականությանը: Թեև հայերին հաճախ են մեղադրել ծայրահեղ հուլիանականության, այն է՝ երևութականության մեջ, Հիսուսի մարմնի անապականության հարցում հայերն ունեցել են «չափավոր» հուլիանական կողմնորոշում, համարելով, որ իր չարչարանքներն ու մահը Հիսուսը կրել է կամովին: Այս մասին մանրամասն տե՛ս **Տէր-Մինասեան Ե**., *Հայոց Եկեղեցու յարաբերութիւնները ասորւոց եկեղեցիների հետ*, Ս. Էջմիածին, 1908, էջ 84–135:

[59] **I. Dorfmann-Lazarev,** “Changing Colours and Forms, Theophanies in the Armenian *Script of the Lord's Infancy*”, p. 350.

սի այս կերպարն այնքան կենդանի ու խոսուն են ստեղծել, որ թվում է՝ իրենք են ականատես եղել, թե ինչպես է Աստծո մանկահասակ որդին քայլում Եգիպտոսի, Ասորիքի, Արաբիայի կամ Իսրայելի քաղաքներով և հասակակից երեխաների հետ խաղալիս՝ ակամա ցուցադրում է իր գերբնական կարողությունները:

## FLIGHT TO EGYPT. THE ACTS OF JESUS IN THE ARMENIAN "GOSPEL OF THE INFANCY"

MAMYAN M.

**Summary**

The Armenian "Gospel of the Infancy" belongs to the series of translated works, nevertheless, the second part of this apocryphon, including the flight to Egypt, presumably belongs to Armenian authors, who, being familiar with other analogous "Infancy" gospels and sometimes even using them, however, represent the holy family's journey to Egypt in their own, unique way. This uniqueness is mostly reflected in the actions of the infant Jesus, whose image is deprived of the cruelty ascribed to Him in similar writings. This new figure is built according to the own understanding of Armenian authors who endowed Jesus with features that are typical only of the merciful Son of God. Moreover, not being concerned for the fact that they are dealing with apocryphon, the Armenian authors depict the image of the infant Jesus in such a vivid form that it seems they themselves witnessed the little Son of God walking around the cities of Egypt, Assyria, Arabia or Israel and playing with peers, inadvertently demonstrating his supernatural capabilities.

# БЕГСТВО В ЕГИПЕТ: ДЕЯНИЯ ИИСУСА В АРМЯНСКОМ «ЕВАНГЕЛИИ ДЕТСТВА»

МАМЯН М.

**Резюме**

Армянское «Евангелие детства» относится к серии переводных апокрифических памятников, однако вторая часть этого сочинения – «Бегство в Египет», по всей вероятности, была дополнена армянскими авторами. Будучи знакомыми с другими аналогичными евангелиями, а порою даже используя их в своих работах, армянские авторы весьма своеобразно описывали путешествие святого семейства в Египет. Сказанное прежде всего отражается в действиях младенца Иисуса, образ которого лишен излишней жестокости, присущей ему в подобных творениях. Таков образ малолетнего Иисуса в восприятии армянских авторов, наделивших его характерными лишь для сына Божьего милосердными чертами. Не принимая во внимание тот факт, что они имеют дело с апокрифом, армянские авторы изображали Иисуса так, словно сами были свидетелями того, как во младенчестве сын Божий ходил по городам Египта, Сирии, Аравии или Израиля и в играх со сверстниками невольно проявлял свои сверхъестественные способности.

# ԵՂԱՆԱԿԻ ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ԿԱՐԳԸ ԳՐԱԿԱՆ ԱՐԵՎԵԼԱՀԱՅԵՐԵՆՈՒՄ*

ՆԵՐՍԻՍՅԱՆ Բ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Ռ.
bagratnersisyan1952@gmail.com, r.avetisyan@mail.ru

Եղանակի կարգը տասնամյակներ շարունակ եղել և մնում է մասնագետների ուշադրության կենտրոնում: Խոսքը վերաբերում է հատկապես **–ել-ու, ալ-ու**-ով, **կ(ը)**-ով և **պիտի, պետք է**-ով կազմությունների քերականական իմաստներին ու տեղին բայի եղանակի համակարգում:

Նախքան սրանց առանձին-առանձին անդրադառնալը՝անհրաժեշտ ենք համարում նշել, որ սահմանական եղանակը, ինչպես ասվել է, իր քերականական իմաստով տարբերվում է մնացած բոլորից նրանով, որ մատնանշում է ստույգ գործողություն: Սա է պատճառը, որ տրամաբանական և փիլիսոփայական օրենքները սահմանական եղանակի բայերով են ստեղծված: Մյուս եղանակների բայերը ստույգ գործողություն չեն մատնանշում, ուստի և դրանցով տրամաբանական դատողություններ հնարավոր չէ անել ու հանգել եզրակացությունների, որոնք ճշմարտացի կարտացոլեն իրականության մեջ գոյություն ունեցող առարկաների ու երևույթների հարաբերությունները. դրանք, այսպես ասած, իրականության եղանակներ չեն:

Խնդրին այս տեսակետից մոտենալու դեպքում, **–ել-ու, ալ-ու**-ով կազմված **գնալու եմ, կարդալու եմ**-ի մասին պիտի արձանագրենք հետևյալը. սրանց մեջ սահմանականության իմաստ չկա, այլ կա անհրաժեշտություն, պարտադրականություն. Օրինակ՝ **Ես գնալու եմ ընկերոջս տուն: Արամը կարդալու է այդ գիրքը:** Այս նախադասություններում հիշյալները ստույգ գործողություն չեն մատնանշում, այլ ենթադրվում է, որ ենթակաները համապատասխան գործողությունները ինչ-որ պատճառով պարտավոր են կատարել, անհրաժեշտ է, որ կատարեն, բայց կկատարեն, թե չէ, հայտնի չէ:

Այս տեսակետից միանգամայն օրինաչափ է, որ հայոց լեզվի ինքնուսույցի հեղինակները՝ Ն. Պառնասյանը և Ժ. Մանուկյանը, **–ել-ու, ալ-ու**-ով և **պիտի/պետքէ**-ով կազմությունները քերականական համանիշներ են հա-

* Հոդվածը տպագրվում է հայ-ռուսական համալսարանի պատվերով:

մարում. «Դեռ շա՞տ **պիտի սպասենք** = Դեռ շա՞տ **ենք սպասելու** – Мы еще долго **должны ждать?** Ճա՞րդ ինչ, ուզես-չուզես **պիտի գնաս**: = Ճա՞րդ ինչ, ուզես-չուզես **գնալու ես: -** У тебя нет выхода, хочешь не хочешь **должен пойти.»**[1]**:**

Ռուսերենի հետ զուգադրաբար բերեցինք նմուշներ պարզապես այն պատճառով, որ առավել ցայտուն է իմաստների ընդհանրությունը, չնայած ամենահասարակ հայերեն օրինակներում էլ դա ակնհայտ է. օր.՝ *Ես **գալու եմ** ձեր տուն: Ես **կգամ** ձեր տուն:* Առաջին նախադասության **գալու եմ**-ը անկասկած պարտադրականության, առնվազն անհրաժեշտության իմաստ ունի, հակառակ դեպքում կասվի՝ **կգամ**:

Հիշյալների իմաստային ընդհանրությունն օրինաչափ է: Այն, որ **կարդալու գիրք, գիրքը կարդալու է**, այսինքն՝ կարդալու ենթակա է, այնուհետև **գիրքը կարդալու եմ** զարգացումն ունենք, կասկածից վեր է: Ըստ որում, վերջինիս հարկադրական իմաստն արևմտահայերենում այնքան ակնհայտ է, որ քերականների մի մասը այն եղանակային ձև է համարում[2]:

Առայժմ կարող ենք եզրակացնել, որ **–ել-ու, -ալ-ու**-ով կազմությունները հիշյալ պատճառով արևելահայերենի սահմանական եղանակի համակարգում չենք կարող զետեղել. հարկադրականության, պարտադրականության, անհրաժեշտության իմաստները չեզոք չեն, արտահայտում են գործողությունը ներկայացնողի կամ գործողի այնպիսի վերաբերմունք, որը ստույգ չէ, ունի վերջինիս հետ անհամատեղելի երանգավորում:

**-Ել-ու, -ալ-ու**-ով կազմություններին ոչ հիմնավորապես անդրադարձել են Գ. Ջահուկյանը և Ա. Շանիձեն: Գ. Ջահուկյանը դրանք սահմանականի համակարգում չի տեղադրում, կարծում է, որ համակարգի մյուս անդամների նման հիմք գումարած վերջավորություն կառույց չեն[3], իսկ Ա. Շանիձեն հոլովական ձևերի հետ էական բայի զուգակցություն է համարում՝ հարկադրականի իմաստով, ուստի և՝ բաղադրյալ ստորոգյալ, քանի որ այս դեպքում սահմանական չի կարող լինել: Ավելացնում է նաև, որ ավելի խոր ուսումնասիրության կարիք կա[4]:

---

[1] **Պառնասյան Ն.Ա., Մանուկյան Ժ.Կ.**, Հայոց լեզվի ինքնուսույց, Ե., 1990, էջ 283:

[2] **Սարգսյետոյան Ռ.Կ.**, Արևմտահայերենի դասագիրք, Ե., 2006, էջ 159:

[3] Տե՛ս **Ջահուկյան Գ.Բ.**, Ժամանակակից հայերենի տեսության հիմունքները, Ե., 1974, էջ 280–287:

[4] Տե՛ս **Шанидзе А.Г.** Новый взгляд на природу спряжения новоармянского глагола. Труды 116. Серия востоковедения, V, Тбилиси, 1965, էջ 423–438:

**Պիտի/պետք է**-ով կազմությունների կապը նշվածների հետ հանրահայտ է: Գրաբարում **պիտի**-ն (պիտոյ է) միադիմի բայ էր և եղանակավորող բառի արժեք ուներ: Ա. Աբրահամյանը նշում է. «Միադիմի բայերից շատերը գրաբարում հանդես են գալիս եղանակավորման դերով, որպես եղանակիչ բայեր: Այդ կարգի միադիմի բայերը դրվում են անորոշ դերբայի վրա՝ տրական հոլովով ենթակայի մոտ: Օր.՝ «… Պիտոյ է ինձ յղել զքեզ առ թագաւորն Պարսից Շապուհ (Բուզ.)՝ Ես քեզ պիտի ուղարկեմ Պարսից Շապուհ թագավորի մոտ»[5]:

Ս. Անթոսյանը հետագա զարգացումն այսպես է ներկայացնում. «Միջին հայերենում **պիտիմ** նախ բայ է: **Պիտի**՝«պետք է» իմաստով բայը, զրկվելով իր նյութական բովանդակությունից, դարձել է եղանակիչ: Միջին հայերենում **պիտի +դիմավոր բայաձև** կազմություններում **պիտի** բառի եղանակիչ լինելու լավագույն ապացույցը նրա հնչյունափոխված զանազան ձևերն են ... Միջին հայերենում **կամիմ** բայով արտահայտվող ապառնի ձևերը ևս աշխուժացան …»[6]:

Մեջբերումից կարելի է եզրակացնել, որ ոչ միայն գրաբարի **պիտի, պիտոյ է, պարտ է, արժան է** միադիմի բայերը, այլև միջին հայերենի **պիտի** + **դիմավոր բայաձևը, պիտ, տի** հնչյունափոխված տարբերակները եղանակավորող բառեր են, քանի որ հազիվ թե հնչյունափոխության հետևանքով կամ էլ **որ** շաղկապը կորցնելու պատճառով դրանք վերածվեին եղանակիչի: Էլ չենք խոսում **կամիմ**-ի մասին: Մյուս դեպքերում, ինչպես վստահեցնում է հեղինակը, ունենք անկախ բայաձևեր:

Այժմ անդրադառնանք գրական արևելահայերենին:

Քննարկենք Ռ. Իշխանյանի տեսակետը[7]: Հեղինակը հենց սկզբից խոստովանում է, որ դժվար է միանշանակ պատասխանել՝ **պիտի/պետք է** –ով կառույցները դիմավոր բայե՞ր են, թե յուրաքանչյուրը մեկ բառային միավոր է: Առանց հիմնավորելու ասում է, որ **պիտի/պետք է գնամ** տիպի կառույցների երկշեշտ արտասանությունը չի ենթադրում, որ դրանք ինքնուրույն միավորներ են: Մինչդեռ, ենթադրում է, քանի որ վերաբերականներ են և հասկացական իմաստից զուրկ լինելով հանդերձ՝ ունենում են շեշտ, քանի որ առանց հնչերանգի վերաբերմունք չի լինի: Հեղինակն անդրադառնում է

---

[5] **Աբրահամյան Ա.Ա.,** Գրաբարի ձեռնարկ, Ե., 1976, էջ 224–225:

[6] **Անթոսյան Ս.Մ.**, Խոնարհման համակարգի զարգացման ընթացքը, Հայոց լեզվի պատմական քերականություն, հատոր II, Ե., 1975, էջ 333–340:

[7] **Իշխանյան Ռ.Ա.**, Արդի հայերենի հոլովումը և խոնարհումը, Ե., 1971:

**պիտի գրել, պիտի կարդալ** կառույցներին ու վերջիններիս ժխտականներին, որոնք իբր միայն **չպիտի գրել, չպիտի կարդալ** տարբերակներն ունեն: Նախ, ասենք, որ **պիտի չգրել, պիտի չկարդալ** տարբերակները ոչ գրական համարելը հազիվ թե համապատասխանի իրականությանը, մանավանդ որ գնալով ավելի ու ավելի են տարածվում **պետք է**-ով տարբերակները՝ **պետք է չգրել, պետք է չկարդալ՝** համապատասխան իմաստային նրբերանգներով: Այն, որ **պիտի**-ն ոչ բայ բառերի հետ չի գործածվում, գալիս է նրանից, որ նախկին միադիմի բայն արդեն քարացած է և ծառայում է բայիմաստով արտահայտված գործողությանը անհրաժեշտության նրբերանգ հաղորդելուն, իսկ մյուս քարացած ձևեր-վերաբերականները համապատասխան իմաստներն են հաղորդում, օր.՝ **գուցե գա/չգա, երանի գա/չգա, թերևս գա/չգա:**

Խոսելով **պետք է**-ով կառույցների մասին՝ Ռ. Իշխանյանը ասում է, որ **պետք եմ, պետք ես** և այլն, դիմավոր բայի հարացույց են կազմում: Բայց սրանք ո՞ր եղանակաժամանակային բառաձևերն են: Արդյոք սրանք նույնը չե՞ն, ինչ **անհրաժեշտ եմ, անհրաժեշտ ես** և այլն, որոնք բաղադրյալ ստորոգյալ են, բացի այդ՝ հեղինակն ինքը վկայակոչում է **պետք բան է**, այսինքն՝ **անհրաժեշտ, պետքական բան է, պետքս չէ**, այսինքն՝ **կարիքը չունեմ, անտարբեր եմ**, իսկ **պետք չկա** նշանակում է **անհրաժեշտություն չկա** և այլն: Հետաքրքիր է՝ **պետք եմ, պետք ես** և մյուսները գործողություն ցույց տվող որևէ հարցի պատասխանո՞ւմ են, որ եղանակաժամանակային բայաձև լինեն, թե **ի՞նչ եմ, ի՞նչ ես** և նման հարցերին են պատասխանում: Հեղինակը պատրաստ է հարացույց վերագրել նույնիսկ **կարելի է** –ին, չնայած որ էական բայի մյուս դեմքերի հետ գործածություն չունի, այսինքն՝ միադիմի է, և ինքնուրույն գործածություն էլ ունի. **Դա կարելի՞ բան է,** որ կնշանակի **թույլատրելի՞ բան է, հնարավո՞ր բան է:**

Եթե հանկարծ ընդունենք, **որ պետք է**-ն և **կարելի է**-ն եղանակաժամանակային բայաձևեր են, ի՞նչ կունենանք. ընդամենը երկու դիմային ձևով արտահայտվող մեկ քերականական իմաստ, մի բան, որ գրական արևելահայերենին հատուկ չէ: Սա է, թերևս, պատճառը, որ Ռ. Իշխանյանը հրաժարվում է այն մտքից, թե կա երկու **պետք է,** մեկը՝ որպես դիմավոր բայ, մյուսը՝ **պիտի**-ին հավասարազոր, և կարծում է, որ գուցե վերջինն է ավելի համոզիչ, ուստի, թեև վերապահությամբ, **պիտի գնամ, պետք է գնամ** միավորները համարում է հարկադրական եղանակի բայաձևեր:

Այս վերլուծությունները մեզ այլ համոզման են բերում: Իրոք, գոյություն ունի մեկից ավելի **պետք է**, բայց դրանցից ոչ մեկը հարացույց չէ: Մի **պետք է**-ն համասարազոր է **պիտի**-ին. սրանցից ոչ մեկը դիմային ձև չէ, այլ անհրաժեշտության իմաստ է հաղորդում **գնամ** բայաձևին: Ու քանի որ այս դեպքում սրանք քարացած «բառեր» են, հասկացական իմաստ չունեցող վերաբերականներ են, մյուսների նման համապատասխան եղանակական իմաստներն են հաղորդում դիմավոր բային: Իսկ **պետք է**-ն մի դեպքում նշանակում է ինչ-որ բանի անհրաժեշտ լինելը, պետքական լինելը, մյուս դեպքում՝ կարիքը լինելը, օր.՝ **Սա ինձ պետք է,** մյուս դեպքում՝ **պետք է**-ն հավասար է **անհրաժեշտ եմ**-ին՝ **Ես պետք եմ ընտանիքիս = Ես անհրաժեշտ եմ ընտանիքիս, Դու պետք ես քո ընտանիքին** և այլն: Սրանց ավելացնում ենք վերը հիշատակածները՝ **պետք բան, պետք չկա, պետքս չէ:** Ինչ վերաբերում է **պետք է գամ** և **պետք է գալ**-ին, ապա սրանք տարբեր են. **պետք է գամ**-ի դեպքում ունենք **պիտի գամ**-ին հավասարարժեք երևույթ, այն է՝ դիմավոր բային անհրաժեշտության իմաստ հաղորդող վերաբերական, իսկ **պետք է գալ**-ը ենթակայով ու ստորոգյալով նախադասություն է՝ **գալ անհրաժեշտ է, գալը աhրաժեշտ է, անհրաժեշտ է խնձոր**:

Սրանց ժխտականները նույնպես շատ բան են պարզում: **Չպետք է գաս, չպիտի գաս** նշանակում են քո **գալու անհրաժեշտությունը չկա, դու պարտավոր չես գալ,** մինչդեռ **պետք է չգաս, պիտի չգաս** նշանակում են **անհրաժեշտ է, որ դու չգաս, դու պարտավոր ես չգալ, դու պետք է գալու գործողությունը չկատարես:** Որքան էլ **պիտի**-ն քարացած միադիմի բայ է, այնուամենայնիվ բայ է, ուստի և **չ**-ն հեշտությամբ է ընդունում, մինչդեռ **պետք է** –ն ավելի դժվարությամբ է դա անում, քանի որ **պետք**-ի առարկայական իմաստը խոչընդոտում է դրան: Հետևանքը լինում է այն, որ օգտագործվում են և՛**չպիտի գաս**, և՛ **չպետք է գաս**՝ մի կողմից, և **պիտի չգաս** ու **պետք է չգաս**՝ մյուս կողմից՝ առանց տարբերակելու հիշյալ իմաստները:

**Չպիտի գալ** կա, **չպիտի գալը, խնձորը** չկա վերոնշյալ պատճառով, այսինքն՝ գալու անհրաժեշտություն չկա, անհրաժեշտ չէ, որ մեկը կատարի գալու գործողությունը.կա գործողության նկատմամբ վերաբերմունք, ուրեմն վերաբերական է: **Չպիտի գալը, խնձոր** չկա, քանի որ գործողություն չկա: **Չպետք է գալ** վերոհիշյալ պատճառով հավասար է **չպիտի գալ**-ին, իսկ **գալը պետք չէ, խնձոր պետք չէ** նշանակում է դրանք անհրաժեշտ չեն, դրանց կարիքը չկա, ուստի և չի կարող լինել **չպետք է գալը, չպետք է** խնձոր:

Այս վերլուծություններից հետևում է, որ **պիտի**-ն ու **պետք է**-ն դիմավոր բայերի հետ գործածվելիս գործողության անհրաժեշտության իմաստ են հաղորդում վերջիններիս, բայց երկրորդական բառահարաբերական ձևույթների չեն վերածվում, այլ պահպանում են իրենց վերաբերական իմաստը:

Բանն այն է, որ եթե **պիտին**-ն, **պետք է**-ն հակադրենք **կ(ը)**-ին, ապա վերջինս իրոք **կոյ**-ից վերածվել է երկրորդական բառահարաբերական ձևույթի, քանի որ ավելանալով գրաբարյան ներկայի բառաձևին՝ կազմում է սահմանականի հարացույցի անդամ, ինչպես քիչ հետո կփորձենք համոզվել, և ոչ թե կամային, այլ ստույգ գործողության իմաստ է հաղորդում, ուստի և սահմանականի եղանակիչ է: **Պիտի**-ն,**պետք է**-ն իրենց տարբերություններով հանդերձ, դիմավոր բայի հետ գործածվելիս չեն վերածվում երկրորդական բառահարաբերական ձևույթի, չեն կազմում այն հնչյունը կամ հնչյունախումբը, որը միայն քերականական իմաստ է հաղորդում բառին: Եվ դա այն պատճառով, որ դիմավոր բայի հետ գործածվելիս որքան էլ զուրկ են հասկացական իմաստից, միևնույն է, ունեն բառային շեշտ և վերաբերական իմաստ: Երկրորդական բառահարաբերական ձևույթները զուրկ են սրանցից:

**Եմ** էական բային հակադրելիս պետք է արձանագրենք, որ վերջինս վերածվում է երկրորդական բառահարաբերական ձևույթի և դադարում ինքնուրույն բառ լինելուց այն պատճառով, որ միանում է **գնում, գնացել**-ին, որոնք բառ չեն: Երբ էական բայը միանում է սրանց, ունենում ենք ոչ թե ինչ-որ բան գումարած **եմ**, որտեղ **եմ**-ը պահպանում է իր բառային իմաստը, այլ **եմ**-ը հիշյալներին, որոնք արդեն որպես հիմք են հանդես գալիս, հաղորդում է դեմքի, թվի, ժամանակի, չ-ի հետ (**չեմ գրի**) նաև եղանակի քերականական իմաստներ. **եմ**-ը վերածվում է երկրորդական բառահարաբերական ձևույթի:

Ավելացնենք ուշադրության արժանի մի հանգամանք ևս, որը պետք է որ վկայի մեր դիտարկումների ճշմարտացիությունը: Խոսքը վերաբերում է **որ** թարմատարով կիրառություններին, երբ տրամագծորեն փոխվում է վերաբերականի իմաստը. **պիտի որ, պետք է որ** արդեն նշանակում է թեականություն, կասկած տեղի ունենալիք կամ չունենալիք գործողության նկատմամբ: Հազիվ թե երկրորդական բառահարաբերական ձևույթն այսպիսի փոփոխության ենթարկվեր: Մի հանգամանք ևս. թեև խոսակցական ոճում է նկատելի, սակայն հետաքրքրական է, որ կան **պիտի/պետք է գնացել էր** ոչ նորմատիվ, բայց գնալով հաճախացող դեպքեր:

Այժմ անդրադառնանք **կ(ը)**-ով բայաձևերին:

Զարմանալի է, բայց փաստ է. թվում էր, թե տասնամյակներ առաջ Գ. Ջահուկյանն իր հրապարակած հոդվածով[8] կարողացել է հիմնավորել, որ **կ(ը)**-ով բայաձևերը սահմանական եղանակի համակարգի մեջ են մտնում: Սակայն անցել են տասնամյակներ, բայց այս տեսակետը ո՛չ դպրոցական ու բուհական ծրագրերում է տեղ գտել, ո՛չ էլ որևէ մեկը հերքել է այն: Այս անտարբերությունն անընդունելի է:

Գուցե կարիք կա Գ. Ջահուկյանի առաջադրած դրույթներն առավել հիմնավորելու: Մեր համեստ ուժերով փորձենք դա անել:

Նախ ասենք, որ **կ(ը)**-ով բայաձևերին հայերենագետներն անդրադարձել են շուրջ հարյուր տարի: Այդ աշխատությունների ու հոդվածների ամբողջական ցանկը ներկայացված է ներքոհիշյալ հոդվածում[9]: Հասկանալի է, որ բոլոր տեսակետները մեկ հոդվածի սահմաններում անհնար է վերլուծել, մանավանդ որ դրանց մի մասին հիշյալ հոդվածում անդրադարձ կա, սակայն անհրաժեշտության դեպքում կարևոր մոտեցումներին կվերադառնանք:

Գ. Ջահուկյանը նշված հոդվածում, բացի մնացյալներից, մի կարևորագույն դիտարկում ունի: Խոսելով այն մասին, որ սահմանականի ձևերը դասավորված են ըստ ձևային ընդհանրության, Գ. Ջահուկյանը նկատում է. «Մեր քերականական աշխատությունների հեղինակները սովորաբար սրանով էլ բավարարվում են՝ և՛ սահմանումները, և՛ անվանումները տալով ըստ այդ հիմունքի: Սակայն ձևական ընդհանրությունները և տարբերությունները միշտ չէ, որ խոսում են իմաստային համապատասխան ընդհանրությունների և տարբերությունների մասին: Այնինչ, ժամանակի քերականական կարգի քերականույթների ուսուցման ժամանակ կարևոր է հենց իմաստային ընդհանրությունների ու տարբերությունների, իմաստային հակադրությունների բացահայտումը. դրա վրա է հիմնված ժամանակաձևերի ճիշտ գործածությունը»[10]:

---

[8] Տե՛ս **Ջահուկյան Գ.Բ.**, Արդի գրական հայերենի ժամանակների համակարգը, Հայոց լեզուն և գրականությունը դպրոցում, Ե., 1983, հ. 1, էջ 17–23:

[9] **Ներսիսյան Բ.Ս.**, Իվանե Ծիլակաձեն արդի արևելահայերենի որոշ քերականական կարգերի մասին, ԲԵՀ, հ. 3, Ե., 2015, էջ 57:

[10] **Ջահուկյան Գ.Բ.**, Արդի գրական հայերենի ժամանակների համակարգը, Հայոց լեզվի տեսության և պատմության հիմնահարցերը, Բեյրութ, 2000, էջ 80:

Մի մեջբերում ևս. տեղ խնայելու համար՝ համառոտած. «Ձևական առումով հասնելով համակարգի միասնության՝ Մ. Աբեղյանը (և նրա հետևությամբ ուրիշները) փաստորեն հաշվի չի առնում, որ **կնստեմ** տիպի ձևերը մեծ չափով տարբերվում են **կնստեի** տիպի ձևերից. եթե **կնստեի** տիպի ձևերը անհրաժեշտորեն պահանջում են պայման, ապա **կնստեմ** տիպի ձևերի համար այն պարտադիր չէ, այսինքն՝ նրանք կարող են ունենալ իրական սահմանական գործածություն…: … **Գնալու եմ** և **գնացել եմ** ձևերը հարաբերվում են խոսելու պահի հետ, **կգնամ** և **գնացի** ձևերը՝ ապառնի և անցյալ պահերի հետ, վերջին երկուսին էլ հատուկ է ստույգ, որոշակի գործողության արտահայտությունը»[11]:

Փորձենք առավել հիմնավորել Գ. Ջահուկյանի թեզը **կնստեմ**-ի մասին:

Այն, որ հիմքակազմությունն է եղել հետազոտողների ելակետը, պարզ երևում է Հ. Պետրոսյանի դիրքորոշումից: Չնայած այս դեպքում խոսքը վերաբերում է համադրական կառույցներին, բայց բանն այն է, որ արդյունքում Հ. Պետրոսյանը **կ(ը)**-ով բայաձևերը տեղափոխում է ըղձականի համակարգ, ինչպես նաև անցյալ կատարյալի ձևերը:

Հեղինակը **կ(ը)**-ով բայաձևերի հարցի լուսաբանումը կապում է հետևյալ «… երեք երևույթների մեկնաբանության հետ. ա) արևելյան գրական լեզվում ունե՞նք «պայմանական կամ ենթադրական», բ) կը մասնիկը եղանականիշ է, եղանակաժամանակային ցուցիչ, թե՞ կերպանիշ է, գ) անցյալ կատարյալը համակարգայնացած է սահմանականի, թե՞ ըղձականի ոլորտում»[12]:

Հեղինակը, ելնելով այն դրույթից, որ «…սահմանականը իր իմաստագործառական բնույթով էապես չեզոք է բուն եղանակավորման նկատմամբ և արտահայտում է գործողության իրացում ներկայում, անցյալում, ապառնիում»[13], իսկ ըղձականը **իրականալիության** պլանի արտահայտիչ է, **կ(ը)**-ով ձևերը բխեցնում է ըղձականից: Եվ անկախ այն հանգամանքից, որ **կ(ը)**-ն գործողության ավարտը մատնանշելու զորություն ունի և դրանով կատարյալի իմաստ է հաղորդում բայաձևին (հենց հեղինակի նշած **կգամ, եկա** բայաձևերը), այնուամենայնիվ **կ(ը)**-ն համարում է կատարելիի և ոչ թե կատարյալի կերպանիշ:

---

[11] Նույն տեղում, էջ 83:

[12] **Պետրոսյան Հ.Զ.**, Հայերենի բայի ձևակազմության մի քանի հարցեր, Բանբեր Երևանի համալսարանի, Ե., 1987, թիվ 2, էջ 108:

[13] Նույն տեղում, էջ 109:

**Կ(ը)**-ով ձևերը Հ. Պետրոսյանը դիտարկում է **գրեմ, կգրեմ, գրեցի** մանրահամակարգում, իսկ **գրելու եմ**-ը՝ միայն **գրում եմ, գրել եմ** մանրահամակարգում: Այս տրամաբանությամբ առաջնորդվելով՝ նա գալիս է այն եզրակացության, որ «… անցյալ կատարյալը գործում է ըղձականի ոլորտում. իր կառուցվածքային, իմաստաբանական ու գործառական հատկություններով էապես նրա անցյալի կատարյալ կերպի արտահայտիչն է…»[14]:

Նման մոտեցումն ունի հետևյալ բացատրությունները. առաջին՝ հեղինակի ելակետը բայաձևերի հիմքակազմությունն է, երկրորդ՝ նույնացնում է ժամանակի և կերպի քերականական կարգերը (անկատար, կատարելի և կատարյալ կերպեր), երրորդ՝ նույնացնում է նաև ժամանակի ու հաջորդականության քերականական կարգերը («Սահմանական եղանակում ժամանակային հաջորդականության պլաններ (ներկա, անցյալ) ստեղծում են օժանդակ բայերը…»[15]), չորրորդ՝ սահմանականի վերլուծական կառույցները դիտարկում է որպես դերբայ, գումարած օժանդակ բայ և համադրական կազմության հետ անհամատեղելի ու անհակադրելի բայաձևեր: Հետևանքը լինում է այն, որ **կ(ը)**-ով բառաձևերին հատուկ քերականական իմաստները չի ընդունում և տեղափոխում է ըղձական եղանակի հարացույց:

Բանն այն է, որ դեռևս անցյալ դարի հիսնական թվականներին Ս. Աբրահամյանի մի հոդվածում[16], բավական համոզիչ փաստարկներ կան **կգրեմ**-ը սահմանականի բայաձև համարելու օգտին: Սակայն, ցավոք, այն բավական ժամանակ անարձագանք մնաց:

Հեղինակը դիպուկ ասում է. «… պարադոքս է այն, թե ռուսերենի սահմանական եղանակի ապառնիի կատարյալ կերպին համապատասխանում է հայերենի պայմանական ապառնին: … Ստացվում է, որ ռուսի կամ ռուսերեն խոսողի համար որպես ստույգ կատարվելիք գիտակցվող գործողությունը հայը կամ հայերեն խոսողը գիտակցում է որպես այնպիսի գործողություն, որի կատարումը ենթադրվում է ասելուց հետո «որոշ պայմանով կամ ենթադրաբար»: Միևնույն աշակերտը ռուսաց լեզվի ժամին напишу բայը ճիշտ կերպով պետք է դիտի որպես ստույգ գործողություն, իսկ հաջորդ ժամին՝ հայոց լեզվի դասին պետք է կասկածի նույն բայի հայերենի տառացի

---

[14] Նույն տեղում:

[15] Նույն տեղում:

[16] **Աբրահամյան Ս.Գ.**, Արդի հայերենի պայմանական կամ ենթադրական եղանակը, ՀՍՍՌ ԳԱ Տեղեկագիր, Ե., 1953, թիվ 9, էջ 75–90:

թարգմանված ձևի (կգրեմ) ցույց տված միևնույն գործողության ստույգ լինելու վրա»[17]:

Եթե ուրիշ ոչինչ չասենք, այս զուգադրությունը շատ կարևոր է լեզուների տիպաբանական ուսումնասիրության ժամանակ, քանի որ պետք է հակադրվեն ու համադրվեն համարժեք լեզվական միավորները, հակառակ դեպքում եզրակացությունները կեղծ կլինեն:

Ս. Աբրահամյանն ավելացնում է. «Ըղձական ապառնին ցույց է տալիս ապառնիում, խոսելուց հետո ցանկալի գործողություն: Քանի որ այս դեպքում ցանկալիությունից բխող չկատարվածությունը վերաբերում է ապագային, ուստի և **ինքնին չի բացառվում ռեալ դառնալու հնարավորությունը** (ընդգծումը Ս. Աբրահամյանինն է – Ն.Բ.), նրա կատարումը ցանկալի է, կարող է կատարվել: Եվ ահա նույն ռեալություն, լինելիություն ցույց տվող եղանակիչը, միանալով ըղձականի ապառնիի հետ, վերջինիս ցանկության բովանդակությանն ավելացնում է իր իմաստը, ստացվում է ապագայում ցանկալի գործողության կատարում, գոյություն, այսինքն՝ ապագա ստույգ գործողություն, ստույգ կատարվելիք գործողություն (կգամ, կգրեմ, կհաղթենք)»[18]:

Այս դատողությունների մեջ իհարկե կա ճշմարտություն այն առումով, որ **կ(ը)**-ով ձևերի մեջ ոչ մի պայման կամ ենթադրություն չկա: Սակայն այստեղ խոցելին այն է, որ **կ(ը)**-ով բառաձևերը կապվում են ըղձականի հետ, ուստի և ցանկալիի ստույգ դառնալն այնքան էլ համոզիչ չէ:

Թերևս նույնն է պատճառը, որ Ս. Աբրահամյանը անցյալի ձևերը համարում է արդեն ոչ թե սահմանականի, այլ պայմանական եղանակի բայաձևեր. «Ռեալություն, լինելիություն ցույց տվող **կ** եղանակիչը, միանալով անցյալում ցանկալի, բայց չկատարված գործողություն ցույց տվող բային, հակադրվում է նրան, և կազմված նոր բայաձևի մեջ տեղ են գտնում երկու հակասական բովանդակություններ: Ստացվում է անցյալում կատարվելիք, բայց չկատարված գործողության կատարման հնարավորություն (կգնայի, կգրեի, կհաղթեինք): ... Պայմանական անցյալի ցույց տված գործողությունը իրականացած չէ»[19]:

Դա, իհարկե, այդպես է: **Կ(ը)**-ով անցյալի մասին թերևս ճշմարիտ է այն, որ բայիմաստով արտահայտվում է տեղի չունեցած գործողություն,

---

[17] Նույն տեղում, էջ 82–83:

[18] Նույն տեղում, էջ 88:

[19] Նույն տեղում, էջ 87–89:

սակայն դրանց պայմանականության քերականական իմաստ վերագրելը, կարծում ենք, իրականությանը չի համապատասխանում, քանի որ արդեն չկատարված գործողությունը, որի քերականական իմաստն առկա է այս բայաձևում, հայտնի չէ, թե ինչ հանգամանքների դեպքում կարող է տեղի ունենալ կամ տեղի չունենալ: Իսկ վերջինիս մեջ համոզվելու համար անհրաժեշտ է դուրս գալ մեկ բառի՝ բայի սահմաններից, տրամաբանական կապը դիտարկել բարդ նախադասության կառուցվածքում: Բացի դրանից՝ **կ(ը)**-ին տարբեր եղանակների քերականական իմաստներ վերագրելը նույնպես համոզիչ չէ:

Այս ամենի պատճառն այն է, որ **կ(ը)**-ով բայաձևերի քերականական իմաստները, ինչպես նախորդ դեպքում, բխեցվում են ըղձականից:

Անհրաժեշտ ենք համարում համառոտակի անդրադառնալ Է. Աղայանի մոտեցումներին: Անդրադառնալով **կ(ը)**-ով ձևերին՝ հեղինակը գրում է. «… **գալու եմ** նշանակում է, թե ես այժմ գործողությունը ապագայում **կատարելու վիճակի մեջ եմ**: Քանի որ առարկան (ենթական) արդեն տվյալ վիճակի մեջ է, ապա բնականաբար կատարելի գործողությունն էլ անխուսափելի է, մինչդեռ **կգամ** բայաձևի մեջ այդ անխուսափելիությունը չի արտահայտվում, այլ պարզապես շեշտվում է գործողության կատարելի լինելը: … Մենք գտնում ենք, որ ենթադրական կամ պայմանական համարված եղանակի ձևերը պետք է դիտել իբրև սահմանական եղանակի ձևեր. այս դեպքում մենք կունենանք. ա) **բաղադրյալ ապառնի** ու **ապառնի անցյալ** և բ) **պարզ ապառնի ու ապառնի անցյալ**»[20]:

Բանն այն է, որ որոշ ժամանակ անց Է. Աղայանը գրում է «… Եղանակների իմաստային վերլուծությունը մեզ այժմ բերում է այլ եզրակացության: … Ենթադրական եղանակը պետք է բնութագրել գործողության կանխադրման կամ նախատեսման վերաբերական իմաստով: Այս տեսակետից, գիտականորեն ավելի ճիշտ կլիներ ենթադրականի փոխարեն գործածել **կանխադրական (պոստուլատիվ)** անվանումը...»[21]:

Եթե փորձենք խորանալ Է. Աղայանի նախորդ և հաջորդ դատողությունների մեջ, ապա կարող ենք ասել, որ հեղինակը, ըստ էության, կարծիքը չի փոխել: Հենց Է. Աղայանի «Արդի հայերենի բացատրական բառարա-

---

[20] **Աղայան Է.Բ.,** Բայի ձևաբանական կառուցվածքը ժամանակակից հայերենում, Պատմաբանասիրական հանդես, Ե., 1963, թիվ 3, էջ 266–267:

[21] **Աղայան Է.Բ.**, Ժամանակակից հայերենի հոլովումը և խոնարհումը, Ե., 1967, էջ 372–373:

նում» կարդում ենք. «Կանխադրույթ, ի, գ. 1. Նախօրոք առաջ քաշված դրույթ: 2. (գիտ.) Արտածությամբ (դեդուկտիվ կերպով) կառուցված գիտական տեսության ելակետային դրույթ, որպես նախադրյալ (պոստուլատ)»[22]: Իսկ արտածությամբ (դեդուկտիվ) դատողություններով գիտական տեսության ելակետային դրույթներ՝ պոստուլատներ, հնարավոր է առաջադրել միայն սահմանական եղանակի քերականական ստույգ իմաստ արտահայտող բայերով: Ուրեմն կանխադրական եղանակը նույնն է, ինչ որ սահմանականը:

Անդրադառնանք Մ. Աբեղյանի դիտարկումներին: Միջին հայերենում **ի** նախդիր ունեցող բայանունով և էական բայով կառույցները սահմանականի համակարգում են, բայց քանի որ **կու**-ով ձևերն ընդհանրանում են դրականի համակարգում, անորոշ դերբայով կազմությունը մնում է միայն բացասական ձևերի համար: Հետագայում **ի** նախդիրն ընկնում է, **ե**-ն դառնում է **ի**, **լ**-ն էլ է ընկնում, **չէի**-ն վերածվում է **չի**-ի, ունենում ենք **չի գրի**, և ներգոյականի իմաստն այլևս չի գիտակցվում[23]:

Սահմանականի ներկան ու անցյալ անկատարը բայական ներգոյականի ձևեր են՝ **-ում** ներգոյականի վերջավորությամբ կամ **ի** նախդրով կազմված, որոնց զուգահեռ **կոյ-ահա** վերաբերականով, այսինքն՝ **կու**-ով կազմությունները գրաբարի ներկան միջին հայերենի ներկա դարձնող կառույցներ են: Բոլորն էլ նշանակում են ընթացքի մեջ գտնվող անավարտ գործողություն: Եվ այս ձևերը գոյատևում են կողք կողքի, որի վկայությունն է, օրինակ՝ Թիֆլիսի բարբառը, որտեղ կա **խոսում իմ** և **կու խոսիմ:**

**Կոյ-ահա** վերաբերականով ներկան կարող էր դառնալ ապառնի, ինչպես որ գրաբարյան ներկան՝ միջին հայերենում: Բայց հաստատական, ստույգ իմաստ ունեցող վերաբերականը՝ եղանակավորող բառը, ինչպե՞ս կարող էր պայմանի իմաստ ստանալ, մանավանդ որ պայմանով գործողություն տեղի ունենալու համար նախ անհրաժեշտ է այդ պայմանը, հետո միայն՝ գործողություն: Դա մի բառով՝ բայաձևով, արտահայտվել չի կարող:

**Կ(ը)**-ին Գ. Ջահուկյանը վերագրում է նաև կերպի քերականական իմաստ. «…**կ(ը)** նախամասնիկը, որ հիմնականում եղանակային արժեք ունի, ձեռք է բերում կերպային արժեք (կատարյալ ապառնի) և իբրև այդ-

[22] **Աղայան Է.Բ.**, Արդի հայերենի բացատրական բառարան, Ե., 1976, էջ 686:

[23] **Աբեղյան Մ.Խ.**, Հայոց լեզվի տեսություն, Ե., 1965, էջ 312–313:

պիսին հակադրվում է անկատար ապառնի ձևերին (այդ թվում **լու**-ով կազմվող բաղադրյալ ձևերին. հմմտ. **կգնամ** և **գնալու եմ**)»[24]։

Ժխտական ձևերի մասին խոսելիս Գ. Ջահուկյանը նշում է. «... կատարյալի իմաստը տրվում է ոչ թե բուն դերբայական մասի, այլ օժանդակ բայի վրա դրվող չ-ի միջոցով, որ **կ**-ի նման որոշակիության արժեք է տալիս բայաձևին»[25]։

Այսպիսով, **կ(ը)**-ով բայաձևերի պատմությանն ու դրանց վերագրվող իրարամերժ քերականական իմաստներին անդրադարձը մեզ բերում է հետևյալ եզրակացություններին։ **Կու(կոյ)** եղանակավորող բառը ավելանում է գրաբարյան ներկային և բնականաբար նորից ներկա է կազմում, բայց արդեն միջին հայերենի ներկան, որն իր հերթին, անցնելով արևելահայերենին, մնում է սահմանականի տիրույթում, բայց արդեն ապառնիի քերականական իմաստով, քանի որ ներկան կազմվում է բայանվան հոլովված ու էական բայի խոնարհված ձևերով՝ հիմք գումարած վերջավորություն կաղապարով։

**Կ(ը)**-ով ձևերի ժխտականը, որ էական բայի ժխտական ձև գումարած բայանուն է (**չեմ ի կարդալ = կարդալու մեջ չեմ = կարդալու ընթացքի մեջ չեմ = չեմ կարդում**), ի հակադրություն **ահա կարդում եմ**-ին, վերածվելով **չեմ կարդա**-ի, դրականի ձևերի հետ միասին անցնում է սահմանականի ապառնիի տիրույթը։ Պահպանելով վերաբերականի իր իմաստը՝ **կ(ը)**-ն ստույգ կատարվելիք գործողություն է մատնանշում, իսկ չ-ն՝ ստույգ չկատարվելիք։

Մյուս դեպքում կու(կոյ) եղանակավորող բառը ավելանում է գրաբարի անցյալի ձևին՝ **կարդար, գրեր,** և միջին հայերենում նորից դառնում սահմանականի անցյալ՝ **կարդում էր, գրում էր:** Սակայն արևելահայերենին անցնելիս արդեն **կկարդայի, կգրեի** բառաձևերում **կ(ը)**եղանակիչը՝ երկրորդական բառահարաբերական ձևույթը, ձեռք է բերում նաև կերպի քերականական կարգի և ժխտականության իմաստ, քանի որ **կկարդայի, կգրեի** նշանակում է **կարդալու, գրելու** ընթացքի մեջ կլինեի անցյալում, բայց ստույգ չեղա.**չկարդացի, չգրեցի**։ Վերջինիս հակառակ իմաստը շատ պարզ երևում է ժխտականի ձևերում. **չէի կարդա, չէի գրի,** այսինքն՝ **չէի ի կարդալ, չէի ի գրիլ** նշանակում է եղա կարդալու և գրելու ընթացքի մեջ,

[24] **Ջահուկյան Գ. Բ.**, Ժամանակակից հայերենի տեսության հիմունքները, Ե., 1974, էջ 251–252։

[25] Նույն տեղում, էջ 283։

այն է՝ ստույգ **կարդացի, գրեցի**, և այս ժխտականների կազմության մեջ եղած չ-ն ձեռք է բերում **կ(ը)**-ին հակառակ իմաստ, այսինքն՝ դրական իմաստ՝ դառնալով նաև կատարյալ կերպի ցուցիչ:

Վերլուծությունների արդյունքները կարող ենք այսպես ամփոփել: **Ել-ու, ալ-ու**-ով կազմությունները համասարազոր են **պետք է / պիտի**-ովին, ստույգ գործողության իմաստ չունեն, ուստի և սահմանական եղանակի հարացույցի մեջ չեն մտնում: **Պետք է /պիտի**-ն եղանակավորող բառեր են, եղանակիչներ չեն, երկրորդական բառահարաբերական ձևույթներ չեն, ուստի և հարկադրական եղանակ չեն կազմում: **Կ(ը)**-ն սահմանականի եղանակիչ է, երկրորդական բառահարաբերական ձևույթ: Սահմանականի ժամանակներն են. ներկա (**գրում եմ, կարդում եմ**), անավարտ անցյալ (**գրում էի, կարդում էի**), ապառնի (**կգրեմ, կկարդամ**), անկատար, այսինքն՝ չիրականացած գործողություն (**կգրեի, կարդայի**), վաղակատար (**գրել եմ, կարդացել եմ**), նախորդող վաղակատար (**գրել էի, կարդացել էի**), անցյալ կատարյալ (**գրեցի, կարդացի**):

## THE CATEGORY OF MOOD IN LITERARY EASTERN ARMENIAN

NERSISYAN B., AVETISYAN R.

**Summary**

In contemporary Armenian Studies the problem of the category of Mood in verb, is currently of great interest to the grammarians. It refers to the structures with -ել-ու, -ալ-ու and կ (ը), as well as to the forms with պիտի/պետք է. We think that the structures with -ել-ու, -ալ-ու are not part of the paradigm of the Indicative, as they do not denote an action, but rather present the declined verbal substantive plus substantivized verb and indicate coercion and necessity. The forms with պիտի/պետք է are not separate forms of the Mood, as they are modal words, rather than morphemes. Կ (ը) is a formant of the Indicative, added to the forms of the future tense. Չ in the structures with չէի is a morpheme of the Perfect, pertaining to the Indicative.

# КАТЕГОРИЯ НАКЛОНЕНИЯ В ЛИТЕРАТУРНОМ ВОСТОЧНОАРМЯНСКОМ ЯЗЫКЕ

НЕРСИСЯН Б., АВЕТИСЯН Р.

**Резюме**

Вопросы числа и структуры наклонений глагола по сей день актуальны для армянского языкознания. Речь идет о двух типах конструкций: с -ել-ու, -ալ-ու и կ (ը) и с պիտի/պետք է. На наш взгляд, конструкции с -ել-ու, -ալ-ու не входят в парадигму изъявительного наклонения глагола,так как не выражают реального значения действия, а представляют собой просклоненную форму отглагольного имени с субстантивным глаголом и имеют значение принудительности или необходимости. Конструкции с պիտի/պետք է не являются отдельными формами наклонения, поскольку в этом случае они выступают в качестве модальных слов, которые не могут быть морфемами. Կ (ը) – это формант изъявительного наклонения, с основами будущего времени. Չ в конструкциях չէի – это морфемы совершенного вида изъявительного наклонения.

Исследование выполнено в Российско-Армянском университете за счет средств, выделенных в рамках субсидии МОН РФ на финансирование научно-исследовательской деятельности РАУ.

# ARMENIAN ARCHITECTURE OF INDEPENDENCE PERIOD: GENERAL GLANCE AT HOTELS AND CENTERS FOR TOURISTIC ENTERTAINMENT

KERTMENJIAN D.
dkertmenjian@gmail.com

The Armenian Architecture of today used to be called *Architecture of Independence* or *Architecture of the Post-Soviet Period*. The architecture in the country recorded many changes either in building type developments or in styles, images and technologies. Very notable are the changes in commercial architecture, due to economic strategies of world communication and transfers, as well as touristic attitudes[1]. The defined impetus is manifest in the case of hotels, transportation buildings and their infrastructures, places for entertainment and other services. However, hotel structuores and their services today have noticeably changed for the better as compared with the Soviet period Armenian Architecture of 1920–1991. Actually, this issue deserves a detailed analysis to enable the control of future attitudes. With regard to the Armenian contemporary architecture issues, very urgent are the classification of the hotel buildings and systematization of their main architectural features.

Soviet Armenian hotels were distinguished by their architectural monumentality and middle-capacity of service amenities. Such were the hotels, sanatoriums and resorts spread throughout Armenia which functioned until recently[2]. In general, brands and network of hotels of large capacities were

[1] **Francisco Asensio Cerver,** The World of Contemporary Architecture, h. f. Ulmann, 2003, p. 22.

[2] Such buildings are the following renowned establishments: Hotel Intourist (1928, arch. N. Buniatyan), Sevan in Yerevan (1930, arch. N. Buniatyan), Writers' Vacation House on

typical of the period. However, these huge complexes and mega-structures have not been renowned yet. It is worth mentioning that the divergent hotel designs resembled those built for the 1980 Olympic games in Moscow and other great cities such as Leningrad, Tallin, Minsk, Kiev and cities in other capitals of the former USSR, Armenia included. Apart from the Olympic villages in Moscow and Tallin, ten "Grand" hotels were constructed in Moscow: Izmaylovo (one of the largest hotels in the world then), Luxury Kosmos, Sevastopol, Salyut, Vesna, Dom Turista, Sport, Soyuz, Bittssevsky Lesopark, Pribaltiyskaya, NA and Pulkovskaya in Leningrad, as well as the Rus and the Olympic in Kiev and Tallin[3]. The mentioned hotels had upgraded the Soviet practice in accordance to the world standards, and this had an indirect effect on hotel building in Armenia as well.

Theoretically, contemporary hotel building practice in the world shows that hotels are very different in capacity. Regarding the case of Armenia, we have focused on average four and five-star rating hotels, including sanatoriums, sport centers, motels, touristic hotels in particular. The touristic hotels are usually classified into hostels, apartments and usual hotels which have compositions of blocked, angular, courtyard types and cottage system arrangements. The mentioned instances are varied according to the number of floors included – from a single-storey to a low-rise, multistorey and high-rise structures[4].

Hotels in contemporary architecture are temporary residences. The buildings that house them must provide hospitable spaces that can tolerate considerable turnover of users. Thus, apart from addressing particular functional requirements of each project, the design will need to make flexible use of space to meet the

---

Sevan island (1934, arch. G. Kochar), Arzni resort (1951, arch. H. Margaryan), Jermuk sanatorium (1953, arch. G. Tamanyan), Armenia (1955, arch.-s M. Grigoryan and Ed. Sarabyan), Mountainous Armenia sanatorium (1968, arch. Z. Bakhchinyan), Ani (1970, arch.-s F. Darbinyan, Ed. Safaryan, F. Hakobyan), Hankavan sanatorium (1974, arch.-s M. Michaelyan and K. Tiraturyan), Dvin (1979, arch.-s F. Dapbinyan, A. Alexanyan, Ed. Sarabyan), Arzni sanatorium (1976, arch. M. Michaelyan), Hotel on the shore of Lake Sevan (1977, arch. S. Gurzadyan and Murza), Youth Palace in Yerevan (1976, group of architects), Prague, Erebouni and others. The hotels were included in the system of "Intourist" organization.

[3] See USSR: Olympic Games preparations, an intelligence assessment of 7 December 1979.

[4] See: **Tigranyan E.A.,** Architecture Design Fundamentals of Public buildings and Structures, Yerevan, 1989, pp. 306–344 (in Armenian).

needs of many different customers. Contemporary hotels, besides presenting monumental buildings, are also different size flexible temporary residences, such as student dormitories and guest-houses. Although the mentioned types vary regarding location and use, all of them have something in common: they succeed in creating a pleasant environment in a robust building[5]. The present study shows that from the viewpoint of world architecture, they actually correspond to the category of hotels, being not only luxury shelters, but also buildings, which convey social and cultural messages[6].

Hotels in Armenia today are very different, too. There are around 1122 registered hotels, which are mainly apartments and hostels. 400 of them are located in the capital city Yerevan. The present survey will cover hotels inherited from the Soviet period, and newly built ones, as well as hostels, apartments of different types. The latter will be presented separately.

**A) ARMENIAN HOTELS INHERITED FROM THE SOVIET PERIOD (Fig. 1).**

The independence period created its new attitudes to hotel architecture. However, the start was marked with upgrading the existing traditions, i.e. modernizing the hotels of the Soviet period. Actually all the old hotels were revitalized and regenerated according to the new conditions. The former hotel "Armenia" transformed into "Marriott" without any change of external image. Main changes include adding new premises to the old building, remodelling all

[5] Compare with: **Francisco Asensio Cerver,** The World of Contemporary Architecture, pp. 860–891.

[6] Vistiros' Center in Yushara (arch. Kengo Kuma, 1994) is a restaurant and a hotel with Western-style and Oriental-style bedrooms. It is for a more romantic style of living. Another example is Hotel Kempinski (arch. Helmut Jahn, 1996) – a flexible space adjacent to the airport. Hotel Paramount in New York (arch. Philip Stark, 1990) includes bedrooms and 2 restaurants, an elegant club, a gymnasium, a creche space, areas for shops and exhibitions, and even a small cinema. A typical example of contemporary life is Cooper Union Residence in New York which includes student residence dormitories, a meeting room and many services. Different aspects of modern life are displayed in S.Maria de Bouro Hotel (arch. Eduardo de Moura and Humberto Vierira, 1989). The purpose of this project was to make use of the stones available from a ruin beside a monument. Hotel Il Palazzo in Fukuoka (arch. Aldo Rossi, 1986) was built with the objective of changing the general perception of a hotel, to be socially, culturally, and intellectually functional rather than merely providing accommodation.

interior spaces and services, according to the UNESCO convention priorities[7]. The case is the same for hotels Ani Plaza, Intourist or modern Golden Tulip, Hrazdan hotel in Hrazdan Valley near Yerevan, Jermuk Armenia, Hotel (Drinking Natural Jermuk Gallery), Mountainous Armenia sanatorium in Dilijan, Writers' Vacation House in Sevan (on the island)[8], Writers' House in Tsakhkadzor, etc.

There have also been violations of international standards of hotel building: demolition of the hotel Sevan at the heart of Yerevan. The building was worth protecting since it was built in 1923 and used to be the heritage of Yerevan's first chief architect. The case is more sensitive for the demolished Youth Palace (arch.-s A. Tarkhanyan, H. Poghosyan, S. Khachikyan and M. Zakaryan) in Yerevan. Although this complex was a monument of Soviet architecture of the 1980s, it was declared non-functioning in 2005, and then a competition under the auspices of UIA (Union of International Architects) was under way to construct a new building in its place. This project did not work because of the sponsor's bankruptcy. It is an unfortunate fact that the complex of the Youth Palace was demolished and has not been rebuilt so far[9].

Among the inherited hotels, we have included the sanatoriums mentioned above, as well as the reuse or architectural adaptations of ancient buildings for hotel purposes. A typical example of this are the recently opened traditional hotel in Gyumri, hotel Caucasus and four other hotels of Tufenkian network named "Armenian Heritage Hotels".

1. The Historic Yerevan Hotel, in the main Avenue, has been transformed from an old XIX century mansion according to the eclectic style of neoclassicism. Featuring traditional Armenian restaurant and café, an outdoor pool and conference facilities, the hotel offers 83 stylish rooms. The interior of the hotel is designed by handcrafted décor elements and luxurious

---

[7] The problem reflected in many literary works by Masters of Modern Architecture from $20^{th}$ century and in World Conventions include the following publications: UNESCO, Convention concerning the Protection of the World Cultural and Natural Heritage, ICOMOS Publication, Paris, 1987. C. Grodach, R. Ehrenfeucht, Urban Revitalization: Remaking cities in a changing world, Routledge, 2015, etc.

[8] For more details of the last building see: https://slobodneveze.wordpress.com/2014 /11/05/ ruben-arevshatyan-conflicting-modernities/

[9] For more details see: https://www.emporis.com/buildings/226371/yerevan-youth-palace-yerevan-armenia

furnishing. The warm and inviting atmosphere of Kharpert restaurant provides a unique recall of ancient Armenian tradition.

2. The Avan-Marak-Tsapatagh hotel has nestled in a most tranquil village near lake Sevan. It is a perfect site where visitors can enjoy breathtaking views of the world's largest high-elevation lake. The hotel offers a range of on-site recreational facilities, loft bedrooms, the traditional restaurant Zanazan. The outdoor dining patio overlooks the sparkling panorama of lake Sevan. All the complex is a revival of a style from late medieval architecture.

3. The Tufenkian Avan-Dzoraget hotel sits along Debed river, between forest-covered hills and rocky slopes of the Caucasus mountains. The hotel has 54 spacious rooms of different types. The restaurant has the option to dine in the opulent atmosphere on the open terrace overlooking the rushing Debed river. The center presents a typical historical tradition from the XIX century vernacular architecture.

4. The Tufenkian Old Dilijan Complex is a travel centre in time and experience of the XIX century Dilijan in native luxury. Comfortable guestrooms feature intricately detailed handmade chandeliers. The guest-house offers two suits and 12 guest rooms. The suits are filled with beautiful, intricate woodwork (from furniture to balcony hand-rails), other architectural details, care and craftsmanship, antique wardrobes, hand-woven carpets, etc. The restaurant Haykanoush, is designed traditionally, considering the inspiring XIX century elements of the Armenian architecture.

## B) NEWLY BUILT HOTELS IN ARMENIA

There are not more than twenty five-star, sixty four-star and many three-star rating hotels in Armenia today. Actually, the rating of the hotels does not include any architectural indication. The rating is for the comfortable functions included in the hotels and nothing more. The study of the hotels includes the following compositional values:

### High-rise and multi-storeyed hotels

This type of hotels are within the area of the city.

Usually housed within the limits of a single building or accommodated on an individual site including a bedroom apartment and adjacent services, such as restaurants, taverns, spas, private spaces, etc.[10] This type of hotels are notable for their architecture. We have included only the following two examples.

1. **Radisson BLU hotel (fig. 2)**

Having a superior hilltop overlooking Yerevan, the ensemble is beautifully positioned by the Victory Park and Lake Areni. The Radisson complex offers five-star accommodation on the upscale Azatutyun Avenue. Magnificent hilltop setting provides awesome views of the city center against the backdrop of Mount Ararat and delivers a resort feel with proximity to businesses and embassies. Guests can walk to attractions in the Cascade Complex and the Charles Aznavour House Museum or easily board the bus or train to reach other destinations. In addition to its breathtaking location, the hotel features 142 rooms and suites housed in an eye-catching stone and glass architecture. Armenian design and soothing colors gorgeously fill each room. Magnificent views from every room and from two on-site restaurants offer lovely outdoor dining areas to maximize access to the surrounding scenery. Other amenities include two on-site bars, laundry services, a spa and a fitness center with a pool. The hotel also offers six aesthetic meeting rooms perfect for business or social gatherings of up to 200 delegates. The composition of the hotel is a nave type design at the core which stretches to the covered entrance and parking lots around. The architecture is modern in sense, colorfully harmonizing the city panorama and woody environment. The volumetric solution is in the rational style of architecture.

2. **The Caucasus complex of Hotel-Restaurant-Tavern-Spa on Ashtarak Highway (fig. 3)**

The Caucasus Hotel is conceived in Organic Architecture approach. The composition centers around mounts Ararat and Aragats on both sides of the area. The hotel complex is first and foremost intended to objectify the centuries-old traditions of the hospitality of the Caucasians, particularly the Armenian people. The 46 rooms constructed in a boutique style, symbolize

---

[10] See: Time saver standards for building types, edited by Joseph De Chiara and John Hancock Callender, Mcgraw Hill books, 2010, pp. 719.

Armenia in their details, the entire palette of furnishings, design, and used materials. Suffice it to say that as in the case of the restaurant complexes, here, too, only natural construction materials have been used: stone, boulder, brick, clay, iron, wood, canvas, bamboo, straw, and natural leather. The chandeliers, lamps, balusters, even the doorknobs are the work of a smith. As a matter of fact, Armenian stone has exclusively been used. And the bar-café bearing the name of Rubinians from medieval Cilicia promotes more meaningful interactions. The rooms include "standard", "deluxe", and "luxe" presidential types. The swimming pool, fitness and massage rooms are auxiliary with the hotel building. The meeting hall is additional for appropriate undertakings and is equipped with luxurious and modern amenities. It is ready to accommodate discussions, conferences, and meetings of business, scientific, and other format. The restaurant is connected to Vahagn neighborhood and the motel complex is to the west. The hotel complex includes a large parking area. To the south of it are the hotel and the restaurant buildings. They are both placed successively to the right and left of a road leading to the conference halls, as well as to private cottages at the far south-east. The conference and restaurant halls include different capacities such as[11]:

- The Artaxiad Hall (330 seats) is built in the amphitheater image, and that is not accidental. During the reign of King Artavazd B (56–34 BCE) a theater of Hellenistic style had been created in Armenia's northern capital Artashat. According to historical sources, a theater troupe under the leadership of tragedian and comedian Yazon had performed here. In 53 BC, the tragedy *Bacchae* by Euripides was staged. The hall is very interesting with its interior because an intriguing waterfall is built in the hall. It grants an unusual calmness, while in the evening guests can dance and have fun under cheerful music and lights.
- The Arsacid hall (550 seats) stands out from the other halls with its splendor and exquisite style, where one can celebrate merriments under the illumination of luxurious chandeliers and around gorgeous tables. In this hall, the Armenian royal style has been recreated to the fullest. The design of the hall is such that it creates interesting pairings in historical Armenia, particularly with festivities and wedding ceremonies in the time-period of

[11] The information about the halls is from the internet site of the hotel.

the Arsacid kingdom which is testified in the works of Armenian historians of the 5th century.

- The Bagratuni hall (50 seats) is classical, exceptionally beautiful, and bright. The style of the hall is in harmony with the spirit of medieval Armenian revival and that is not accidental. It was precisely in the time-period of the Bagratuni rule that Armenian culture had a new ascent, and several centuries before the Europeans, gave samples of Renaissance culture to the world. The stylistic and architectural nuances of Ani, the capital of the Bagratids, have a unique place in the design of the hall.
- The beautiful Orontid Hall (60 seats) is decorated with historical paintings and gorgeous chandeliers, which while having a modern style, at the same time ensure a unique feeling of historicity. This hall is an ideal place for organizing small gatherings with friends or relatives. The interior obliges one to forget daily troubles and rest a little in this beautiful hall with a marvelous and interesting scenery.
- The Tavern, with its style and internal furnishings is in extreme harmony with the general spirit of the Caucasus restaurant complex. Here the Caucasian elements are underscored at most. It is in the style of taverns and inns of the end of the XIX and the beginning of the XX centuries, starting from chairs and tables, and ending with the chinaware and various accessories.

Most hotels in Armenia are within the texture of the cities, where they are usually collected in one building. The indicated buildings are somehow of the high multi-storeyed type, i.e. the number of the floors rarely surpasses 12 storeys. The center of Yerevan is full of hotels of the mentioned type, such as: Grand Hotel Yerevan between Abovian street and North Avenue, North Hotel in the same avenue, Opera Suit Hotel in Baghramyan street, Best Western Congress Hotel in Shahumyan square, Paris Hotel, National Hotel, Hyatt Place Yerevan, Republican Hotel, Diamond House Hotel, La Piazza Hotel in North Avenue, Double Tree Hilton Hotel, Alley Residence Hotel of Komitas. High-rise new buildings may have three or four-star ratings: Family Hotel in the main avenue, Ibis Yerevan Center Hotel. Other examples are Ararat Resort Hotel and Apartment Mori Plaza in Tsakhkadzor, Shoushi Hotel Armenia, etc.

